# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԵՆ, ՄԱՆՈՒԿՆԵՐ...

Հ. ՍԱՀՅԱՆ

Բնությունը մոր նման բացել է գիրկն իր բարի,
Ձեր ոտքի տակ ճամբարի ճամփաներն են կանաչում,
Ձեզ համար են սոսափում բոլոր ծառերն անտառի,
Եվ առուներն անտառի ձեզ համար են կարկաչում.
Դուք զեփյուռներ եք շնչում, ցող եք խմում դուք ամպից,
Ծաղիկներ եք քաղում դուք բացատների կանաչում,
Ա՜խ, դուք խելոք եք այնքան, այնպես մաքուր ու անբիծ,
Որ ձեզանից, մանուկնե՛ր, ծաղիկներն են ամաչում.

Բնությունը մոր նման բացել է գիրկն իր հավերժ,
Գագաթների վեհության կարոտանքն է ձեզ կանչում,
Ձեզ համար են շառաչում ջրվեժները գահավեժ,
Եղնիկները սարերի ձեզ համար են բառաչում։
Ձեր մկաններն եք կոփում ու կոփում եք ձեր հոգին,
Դուք ելնում եք արշավի, բարձունքներ եք նվաճում,
Այնպես արագ եք թռչում, այնպես թեթև, հրճվագին,
Որ ձեզանից, մանուկնե՛ր, մրրիկներն են ամաչում։

Բնությունը մոր նման բացել է գիրկն իր բարի,
Ձեզ տոկալու նոր կորով ու նոր կամք է ներշնչում։
Ձեր քայլերն են անրջում արահետները սարի,
Ձեզ համար է գիշերով հավքերի կանչը հնչում,
Դուք խաղում եք ու երգում, և ձեր երգերն են կրկին
Մերթ շառաչում գետի պես, մերթ առվի պես կարկաչում,
Այնպես զվարթ եք երգում, այնպես քաղցր ու սրտագին,
Որ ձեզանից, մանուկնե՛ր, ծիծառներն են ամաչում։

Բնությունը մոր նման ձեր դեմ իր գիրկն է բացել
Եվ տվածը ձեզանից նա դեռ ետ չի պահանջում,
Ձեզ համար են հովերը պուրակներում արթնացել,
Ձեզ համար են հողմերը անդունդների մեջ ննջում.
Վայելեցե՛ք բնությունն, աճեք նրա գրկի մեջ,
Տեսե՛ք, ծառերն օրերով, դուք ժամերով եք աճում,
Այնպես արագ եք աճում, այնպես փթթում եք անվերջ,
Որ ձեզանից, մանուկնե՛ր, ողջ ծառերն են ամաչում։

Անակնկալ հողմերին ես իմ կուրծքը կզարկեմ,
Կտամ իմ կյանքը բոլոր, բոլոր գանձերը խոսքի,
Միայն թե մայր բնության ճակատն այնպես պսակեն
Ձեր վրանները սպիտակ, ձեր խարույկները ոսկի։
Պարգևված են ձեզ բոլոր բարիքները բնության,
Հայրենիքիս մայրական ձեռքերն են ձեզ փայփայում,
Վայելեցե՛ք, մանուկներ, վայելեցե՛ք հավիտյան,
Ձեզանով է երջանիկ մայր բնությունն աշխարհում։

№ 8 1958 թ.

ՕԳՈՍՏՈՍ

ՊԻՈՆԵՐ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 30-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ





*Ճամբարի առաջին օրն էր։*

*Ամեն ինչ դեռ իր հունի մեջ չէր մտել այստեղ, դեռ առանձին պիոներներ էին գալիս. նրանց հարկավոր էր ընդունել, տեղավորել։ Ջոկատներում աշխատանքը նոր էր սկսում կազմակերպվել։ Շատ պիոներներ, որոնք առաջին անգամ էին ճամբարում լինում, սկսել էին տարակուսել՝ մի՞թե այսպես է լինելու ամեն օր։ Նախաճաշից հետո նրանցից շատերը անգործ թափառում էին ճամբարում, ոմանք արդեն ծանոթացել էին միմյանց և խոտերին նստած զրուցում էին, իսկ երեխաների մի մասն էլ խմբվել էր ջոկատավարների շուրջը։*

*Մի խումբ երեխաներ մոտեցան ճամբարի ներքևի մասում եղած շինությանը, որի ճակատին գրված էր՝ «Ակումբ»։ Ներս մտան։*

*— Ոչ մի հետաքրքիր բան էլ չկա,—դահլիճի դատարկ աթոռներին նայելով, ասաց Պետիկը։*

*— Տեսե՛ք,—հանկարծ կանչեց Աշոտը, —բնագիտական կաբինետն է։*

*Երեխաները զգուշությամբ բաց արին դուռը։ Ներսում մի տարիքով մարդ էր կանգնած, որը տեսնելով երեխաներին, ժպտաց.*

*— Բարև ձեզ, երեխաներ, եկե՛ք, ներս եկեք։*

*— Բարև ձեզ, ընկեր Շալջյան,—բոլորի փոխարեն պատասխանեց տղաներից մեկը, որ ճանաչում էր նրան,—դուք երևի բնագիտական խմբակի ղեկավա՞րն եք։*

*—Այո,—կրկին ժպտաց Շալջյանը,—շուտով մենք բնասերների խմբակ կկազմենք և կսկսենք աշխատել։ Իսկ դուք սիրո՞ւմ եք բնագիտությունը։*

*— Իհարկե,—մեջ մտավ Աշոտը,—ես դպրոցում էլ բնասերների խմբակի անդամ եմ։*

— Ես էլ, ես էլ,—վրա տվեցին մի քանի ձայներ։

— Դե շատ լավ է, ուրեմն շուտով կհանդիպենք,— ասաց Շալջյանը։

Երեխաները դուրս եկան ակումբից։ Նրանց տրամադրությունը բարձրացել էր։ Վիճում էին, թե ով ավելի լավ կոլեկցիաներ կհավաքի։

Այդ պահին տղաներից ամենափոքրը՝ Կարոն, որ մոտեցել էր առանձին կանգնած փոքրիկ տնակին, բարձրացավ ոտքերի ծայրերի վրա ու լուսամուտից ներս նայեց.

— Մեկ, երկու, երեք, չորս, հինգ... Տղաներ, ապա եկեք,—ձայն տվեց նա,—այստեղ հինգ հատ կարի մեքենա կա։ Երևի մեզ կար անել են սովորեցնելու։

—Աղջիկների գործն է, ինչ ես ուրախացել,— բարկացավ Սպարտակը,—մեզ կարգին գործ է պետք...

Այսպես խոսելով տղաները կանգ առան փայտամշակման արհեստանոցի դռան առջև։

— Այ, այստեղ ես ինձ իսկական գործ կգտնեմ,—ասաց Սպարտակը ու թակեց դուռը։

Ձայն հանող չեղավ։ Նա դուռը բացեց ու ներս նայեց. մարդ չկար։ Սենյակի մեջտեղում շարված էին փայտամշակման գեղեցիկ դազգահներ։ Նրանց վրա ամրացված էին զանազան սարքեր ու գործիքներ։ Պատերին փակցված էին ինքնաթիռների ու նավերի մոդելների սխեմաներ։ Առաստաղից կախված, ճոճվում էին մի քանի պատրաստի մոդելներ։

Տղաները կամացուկ ներս մտան։ Այդ ժամանակ էլ վրա հասավ արհեստանոցի ղեկավար Ազատյանը։

— Լավ է, որ ինքներդ եք եկել ծանոթանալու արհեստանոցին,—ասաց նա—ա՛յ, տեսնո՞ւմ եք այս դազգահները։ Դրանք Արտեկից ձեզ համար մեր ճամբարի պետ ընկեր Վանեցյանն է բերել։ Եվ մենք այս տարի շատ լավ գործեր կանենք։

— Իսկ ռանդա ունե՞ք,—չգիտես ինչու հարցրեց Մանուկը։

— Ամեն ինչ ունենք։ Հապա նայեք,—ասաց Ազատյանն ու բաց արեց անկյունում դրված պահարանի դուռը։

Այնտեղ կանոնավոր շարքերով դասավորված էին ուրագներ, ռանդաներ, մուրճեր, աքցաններ և այլ բազմաթիվ ու բազմապիսի գործիքներ։

— Վաղվանից մենք կսկսենք աշխատել։ Ով ցանկանում է մասնակցել ավիամոդելիստների, նավաշինարարների և տաղձագործական խմբակների պարապմունքներին, կարող է ցուցակագրվել ավագ ջոկատավար ընկեր Աթանեսյանի մոտ,—ասաց Ազատյանը,—իսկ այժմ, լսո՞ւմ եք, շեփորը ձեզ է կանչում, դե շտապեք։

### ՀՄՈՒՏ ՁԵՌՔԵՐԸ

Շատերը գրվեցին տեխնիկական խմբակներում։ Եվ նրանց առօրյան հետաքրքիր դարձավ։ Սպարտակն այլևս չէր տրտնջում, որ կարգին գործ չունի։ Նա իր եղբոր՝ Սաշիկի հետ մասնակցում էր ավիամոդելիստների խմբակին։

Բոլոր տղաներին մեծ ոգևորություն պատճառեց նրանց ղեկավարը, որ մի օր ասաց.

— Բացի մոդելներ պատրաստելուց, մենք պետք է օգնենք մեր ճամբարին։ Երրորդ և չորրորդ ննջարանների հատակը հողից է, և մենք պետք է տախտակապատենք։ Իսկ բժիշկը խնդրել է արկղ պատրաստել։

Պետք էր տեսնել, թե ինչ եռանդով տղաները գործի կպան։ Սղոցներով և ուրագներով զինված Սաշիկն ու Սպարտակը, Կարպիսն, ու Ռուդիկը



Մարտիկն ու Մանուկը, բոլոր տղաները իսկական վարպետների պես սղոցում էին տախտակները, տաշում ու հղկում և ամրացնում էին իրար։ Նշխարանների հատակը ծածկվեց։ Շուտով սանիտարները սենյակների հատակը մաքրում էին պատանի վարպետների պատրաստած խոզանակներով։ Ճամբարում երևացին փայտե գեղեցիկ աղբանոթներ, փոստարկղներ։ Նորոգվեցին դրոշակների փայտերը, նկարների ու պլակատների շրջանակները։

Եթե որևէ տեղ մի բան էր կոտրվում, վրա էին հասնում պատանի վարպետների հմուտ ձեռքերը։

Ճամբարում բոլորը հիացմունքով էին խոսում նրանց մասին, իսկ փոքրահասակներից շատերը գալիս էին արհեստանոց՝ տղաների պատրաստած գեղեցիկ մոդելները տեսնելու։

### ՀԱՄԱԶԳԵՍՏՆԵՐԸ

Գործի էր անցել և կարի ու ձևի խմբակը։ Աղջիկներից շատերը սիրով կարել էին սովորում խմբակի ղեկավար Կիմա Հակոբյանի մոտ։ Բայց նրանք գոհ չէին։ Մտածում էին ինչպես անեն, որ ետ չմնան տղաներից և իրենք էլ օգնեն ճամբարին։ Իսկ առիթը երկար սպասել չտվեց իրեն։

Ճամբարային ուրախ երեկոներից մեկն էր։ Երեխաները պարում, երգում, զվարճանում էին։ Ահա սկսեցին պարել բոլորին հայտնի նավաստիների սիրած «Յաբլոչկա» պարը։

— Ինչ լա՜վ կլիներ, որ նրանք նավաստու համազգեստով պարեին,— ծոր տվեց Դոնարան։

— Իսկ եթե մենք նրանց համար կարե՞նք...— միջամտեց Սիլվան։

Եվ հաջորդ օրը ընկեր Կիմայի հետ խորհրդակցելուց հետո աղջիկներն էլ ոգևորված գործի անցան։ Չափեցին, չափչփեցին կտորը, ձևեցին ու սկսեցին կարել։ Բոլորին էլ գործ գտնվեց։

— Հիմա մեր պարողներն ավելի գեղեցիկ ելույթ կունենան,— ուրախանում էին աղջիկները։

### ԲՆԱՍԵՐՆԵՐԸ

— Աշոտը օձ է բռնել, եկե՛ք, եկե՛ք, տեսե՛ք,— ճչալով բնագիտական կաբինետ ընկավ փոքրիկ Կարոն։

Բոլորը դուրս վազեցին։ Աշոտը մի ձեռքով բռնել էր օձի գլխից, մյուսով՝ պոչից ու հպարտ-հպարտ գալիս էր։ Իհարկե, օձը մեծ չէր, բայց Կարոն զարմանում էր, թե ինչպես Աշոտը չի վախեցել։

— Ի՞նչ կա վախենալու, պետք է միայն իմանալ, թե որտեղից և ինչպես բռնել օձին։ Մեզ մոտ՝ Քանաքեռում էլ օձեր շատ են հանդիպում, և մենք բռնում ենք նրանց։

— Ինձ էլ սովորեցրու օձ բռնել, լա՞վ, Աշոտ,— խնդրեց Կարոն։



Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

— Դու դեռ մողես չես կարողանում բռնել, պոչը ձեռքիդ է մնում, օձը քո ինչ բանն է։

— Միայն մի անգամ ցույց տուր, թե ինչպես ես բռնում,— նորից խնդրեց Կարոն և փայլեցնելով ժիր ու շարժուն աչքերը, ավելացրեց,— իսկ մողես ես արդեն բռնել եմ, ընկեր Շալջյանի մոտ է։ Գորտ էլ եմ բռնել, իսկ մուկը փախավ։

— Դե լավ, կտեսնենք,— ասաց Կարոն ու օձը տարավ կաբինետ։

Ամեն անգամ, երբ բնասերների խմբակը վերադառնում էր անտառից կամ դաշտից, բնագիտական կաբինետը վեր էր ածվում մի իսկական կենդանի անկյան։ Բազմաթիվ միջատներն ու թիթեռները, գորտերն ու մողեսները անմիջապես տեղավորվում էին տուփերի ու անոթների մեջ, բազմապիսի բույսերի ու ծաղիկների բուրմունքը տարածվում էր ամբողջ շենքում։

Շուտով երեխաները պատրաստեցին նաև տերրարիում։ Դա ապակեպատ մի մեծ արկղ էր, որտեղ բնակվում էին օձեր ու մողեսներ, գորտեր ու բզեզներ, զանազան միջատներ։

Եվ երբ ճամբարի երեխաները գալիս էին տերրարիումը դիտելու, Կարոն միշտ այնտեղ էր լինում ու բացատրություններ էր տալիս։

— Ա՛յ, տեսնո՞ւմ եք, այն գորշագույն օձը. դա ես եմ բռնել, իսկ մյուս երկուսը Աշոտինն են։

Վ. ԵՐԿԱՆՅԱՆ, Կ. ԱԶԻԶՅԱՆ

(Ծաղկաձորի Լուսաչխի պիոներական ճամբար)



# ԻՆՉԻՑ ՍԿՍՎԵՑ

**(Պատմվածքն արժանացել է «Պիոներ» ամսագրի մրցանակաբաշխության երկրորդ մրցանակին)**

ԱՂԱՎՆԻ

ՆԿ. Ռ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

*Հիմնարկը, ուր ես աշխատում էի, ժամանակի աչքի ընկնող հիմնարկներից էր և ուներ մի դիրեկտոր, մի կուլտուրնիկ, մի գրադարանապետ, պատի թերթի մի խմբագիր և մի հատ էլ հավաքարարուհի: Դիրեկտորի պաշտոնը ես էի վարում, թվածս մյուս պաշտոններն էլ տրված էին ինձ համատեղության կարգով: Իսկ թե ինչու էի իմ աշակերտական ուսերին այդպիսի ծանրակշիռ բեռ վերցրել, ոմանց ենթադրությամբ դա իմ ագահությունից էր, ուրիշների պնդումով ես փառասեր էի, իսկ իրականում պատճառն այն էր, որ ես, ինչպես ասում են, հարյուր տոկոսով որբ էի, նույն չափով անտուն, իսկ միջնակարգ կրթություն ստանալու ցանկությունս էլ վեր էր բոլոր տեսակի տոկոսներից: Ուրեմն, հարկավոր էր, որ ես դպրոց գնայի, դասերից հետո գայի աշխատանքի, օրական հիսուն կոպեկով յոլա տանեի իմ տասնվեցամյա ախորժակը, գիշերն էլ քնեի իմ ղեկավարած հիմնարկի մի անկյունում: Կատարյալ երջանկություն...*

*Բայց, կարծեք թե, ես տարվում եմ կողմնակի բաներով ու մոռանում ամենագլխավորը, ինչպիսին էր իմ ղեկավարած հիմնարկը: Այն ժամանակվա հասկացողությամբ՝ դա կոչվում էր* կարմիր անկյուն՝ *ակումբի նման մի բան, ուր իրենց ազատ ժամերն էին անցկացնում մեր քաղաքի փոխադրող բանվորները, ավտովարորդներն ու բեռնակիր մշակները:*

*Շուտով ես ուրիշ այցելուներ էլ ունեցա, որոնք ոչ մի տեղ չէին աշխատում, ոչ մի պրոֆմիության անդամ չէին, բայց մեր քաղաքում շատ ճանաչված ու շատ էլ ազդեցիկ մարդիկ էին, ու նրանց անունը լսելիս, հավասարապես գունատվում էին մեր քաղաքի նէպմանները[1]) ու աշակերտուհիները: Աշակերտուհիները, առանց իմ ասելու էլ դժվար չի կռահել, թե ինչից ու ինչից կարող են գունատվել, բայց, ա՛յ, նէպման ասվածը կենդանական մի այնպիսի տեսակ է, որ հիմա նույնիսկ թանգարանում չեք գտնի դրա բրածոն: Իսկ այն օրերին մեր քաղաքում հիանալի կերպով բազմանում էին դրանք: Բազմանում էին այնպես, որ ես ամեն առավոտ մի նոր նէպմանական խանութ էի տեսնում այն փողոցի վրա, որով անցնում էի: Եվ ի՜նչ խանութներ, լեփ-լեցուն ամեն տեսակի ապրանքներով, իրերով և չտեսնված ու չլսված մթերքներով: Իրենց խանութների նման պարարտ էին նաև իրենք՝ նէպմանները: Դրանք հաստ ու կարմիր վզեր ունեին, թմփլիկ ձեռքեր և երկու կամ երեք տակ ծալված կզակներ: Դրանցից մեկի կզակը կարծեմ երեքից էլ ավելի ծալքեր ուներ, իսկ բեղ ու մորուք՝ բոլորովին: Այդ մարդու անունը, իր գիտենալով՝ Համո էր, մեր քաղաքի գիտենալով՝ Բոխախ-մորքուր...*

*Իմ կարմիր անկյունը Բոխախ-մորքուրի խանու-*

---

[1]) *Քսանական թվականներին մեր հայրենիքում գոյություն ունեին նաև մասնավոր առևտուր և արդյունաբերություն: Սովետական իշխանության սահմանած ժամանակավոր այդ կարգը ռուսերեն կոչվում էր* «Новая экономическая политика»*—ՆԷՊ, իսկ այդ գործով զբաղվող մարդիկ կոչվում էին նէպմաններ: Ծ. Հ.*

թի կողքին էր և մենք հարևանության կարգով իրար առնում էինք։ Մեր առնչությունը պոռթկաց այն օրը, երբ ես մտա նրա խանութը։ Աշխատավարձ էի ստացել, ամբողջ քսանհինգ ռուբլի հիսուն կոպեկ, և որոշեցի մի քանի գրամ երշիկ առնել ու մի լավ քեֆ անել։

— Ախպորս մանչն ի՞նչ կուզե,— շինծու մտերմությամբ ինձ դիմեց Բոխախը, միաժամանակ հեգնանքով նայելով իմ կոմերիտական համազգեստին, որի ամենաատպավորիչ մասը կաշվե ուսափոկն էր։ «Հեգնում ես, հա՞»— մտքումս զայրացա ես ու՝

— Ջանսաղություն․ Բոխախ-մորքուր ջան,— անամոթ հանգստությամբ ժպտացի նրա երեսն ի վեր։

— Իա՛…— Բոխախ-մորքուրը զայրույթով ու զարմանքով բաց արեց իր ճարպոտ բերանը, բայց այլևս չհասցրեց փակել, քանի որ ներս էր մտել մեկն այն մարդկանցից, որոնք սարսափ էին ազդում սրանց ցեղին ու աշակերտուհիներին…— Տարավ, է՛, տարա՛վ,— վերջապես ծղրտաց Մորքուրն այն պահին, երբ հիշյալ այցելուն արդեն հափշտակել էր մի հիանալի կտոր երշիկ, մազութոտ աչքերը ոլորել էր Բոխախի վրա ու դուրս թռել։ Մորքումս փառք տալով այդ ազնիվ վրիժառուին, ես



գոհ սրտով վերադարձա ու… կարծես թե մասամբ վախեցա, նրան տեսնելով իմ հիմնարկում։ Ուրիշ դեպքում միջոց կգտնեի միլիցիոներին իմաց տալու, բայց այս անգամ թշնամանքս դեպի Բոխախն ավելի ուժեղ գտնվեց, քան կոմերիտական խիղճս, ու ես թաքցրի ինձ ապավինածին։ Երբ փողոցը խաղաղվեց ու Բոխախի ծվծվոցներն էլ դադարեցին, ես ու իմ հյուրը նոր միայն հանգամանորեն իրար ուսումնասիրեցինք։ Դա մի շատ սովորական խուժան էր, մեկը նրանցից, որ այն ժամանակ բավականին շատ էին մեր քաղաքում։ Ես գիտեի նաև նրա անունն ու մասնագիտությունը. անունը Կոկռոշ էր, մասնագիտությունն էլ՝ նա գլխավորում էր իր դասի հարձակումները շուկայում և նէպմանների խանութների վրա, կշտանալուց հետո էլ կանգնում էր ոչ մարդաշատ փողոցներում ու կոշկակարի բզով ծակոտում աշակերտուհիների թևերը։

— Մրենեյանք, մրջուրն ընկանք,— մռայլ փընթփընթաց Կոկռոշը և այն է, ուզում էր դուրս թռչել, ես բռնեցի։— Իա՛, կոնսամոլի ձեռքով գնա՛մ— թահո՛ւ,— փնչաց նա։— Խաթերս համար, բաց թող, թե չէ…

— Սպասիր, ես քեզ բռնել չեմ տա։

— Երդում կեր…

— Յոթ վերքը վկա։

— Էդ հեչ, վրեն գրե, կոնսամոլը էդոր չի հավատա…

— Հորս ու մորս գերեզմանը վկա։

— Մեռա՞ծ են։

— Ըհը՛։

Նա ծոցից հանեց իր ափարն ու դրեց սեղանին։ — Ախպերությունը աղ ու հացով կեղնի, անուշ արա, կոնսամոլ…

Կոկռոշն իմ հիմնարկից գնաց բավականին ուշ, այն պահին, երբ շեմքին երևաց իմ առաջին այցելուն, նրա կարծիքով՝ իմ «նաչալնիկը», քանի որ քեռի Միհրանը թարս էր նայել նրան։ Գնաց ափսոսանքով՝ ռադիո էր լսել, նկարազարդ ամսագրերն էր նայել, իմ դասագրքերն էր թերթել ու համոզվել էր, որ ես «գիտուն» մարդ եմ… Դրանից հետո նա էլի եկավ ու այլևս սովորություն դարձրեց։ Միայն վատն այն էր, որ մեր բարեկամությունից շահում էր Բոխախ-մորքուրը՝ խուժանները իմ պատվին հանգիստ էին թողել նրան ու իրենց գործողությունները տեղափոխել էին հեռավոր ճակատամասերը…

Մի անգամ Կոկռոշը տխրությամբ ինձ ասաց.

— Դու ինձի էսպես պատիվ կուտաս, իսկ ես հեչ…։ — Ասացի, որ ինքն էլ ինձ կարող է պատիվ տալ։ — Դրա համար մարդը մարդ պիտի էղնի ու տուն ունենա…

Ու ես որոշեցի առանց կանչվելու, հյուր գնալ Կոկռոշին։ Իմ արածը զուտ խենթություն էր,

գուցե անխոհեմ քայլ, բայց գնացի։ Խուժանների որջը Թուրքի Թաղի ավերակների մեջ էր, ես այդ գիտեի։

Առաջին այցելությունս անսպասելի էր և ակրզ-քում շատ լարված բնույթ ստացավ. ես նրանցից էի վախենում, նրանք՝ ինձանից։ Ու չնայած, Կոկ-ռոշը ձևացավ, թե շատ ուրախացել է, բայց ես տեսա, որ իմ երևալուն պես նա մարդիկ ուղար-կեց շրջակայքը հետախուզելու, և ինձ էլ հրավի-րեց նստելու այն քանից հետո, երբ գնացողներից մեկը եկավ ու անփույթ ասաց. «Դուրսն էլ էնպես անուշ արև է...» Դրան հաջորդեց մի ուրիշ ակ-նարկ Կոկռոշի կողմից ու մի անռելիոբեն կեղտոտ փայտի վրա հայտնվեցին նէպմանական ծագում ունեցող շատ ու շատ բարիքներ՝ խուժաններն ինձ հյուրասիրում էին...

Հետագայում դարձյալ երբեմն այցելում էի նրանց ու թեև արդեն տանու մարդ էի դարձել և նույնիսկ գրքեր էի կարդում նրանց համար, բայց միշտ էլ իմ երևալուն պես նրանք հետախույզներ էին ուղարկում, իսկ իմ ոտքերը դողում էին։ Գու-ցե այդ միայն Կոկռոշն էր տեսնում ու նա էլ մի անգամ հարցրեց.

— Մեզնից չե՞ս վախենա, որ կուգաս... — Խոսքի հետ գրպանից հանեց ծխախոտի տուփը և, իբր թե պատահմամբ, վար գցեց ֆիննական դանակը։ Բոլորը վայրագ հայացքներ փոխանակեցին։ Ես հուսահատ քաջությամբ ձեռքս մեկնեցի նրա ծխախոտին։

— Ախպորը ղուրբա՛ն,— ուրախացավ նա։ Մյուս-ները ավելի լարվեցին։ Վառեցի ծխախոտն ու հա-զալով ասացի.

— Ինչո՞ւ, դուք հո մարդագել չե՞ք, որ վախենամ։ Դուք որբ եք, ես էլ որբ եմ։ Մենակ թե, ես բզով աղջիկներին չեմ վախեցնում, դպրոց եմ գնում և աշխատում եմ ու գլուխս պահում...

Կոկռոշի երեսին մատիս հաստությամբ կեղտ կար, ու միայն աչքերից երևաց որ նա շառագու-նել էր։

— Կերցրեցի՞ր,— տնքաց նա։

— Կերցրեցի։ Տղամարդը էդպիսի բան չպիտի անի, դա աննամուսություն է։

Կոկռոշը գետնից հափշտակեց դանակն ու... մեկնեց ինձ.

— Ա՛ռ, վիզս կտրե, էդ ամոթանքը՛ մի տա։

— Բիզն ո՞ւր է,— դանակը վերցնելով առաջ անցա ես։ Բիզն էլ տվեց։ Վերադարձրի ու մտեր-մորեն ասացի,— ջարդիր, եթե ես քեզ մոտ պա-տիվ ունեմ։

— Ահա, էս էլ թող քեզի ղուրբան եղնի, բզի եղա՞ծն ինչ է,— ու ջարդեց։

— Խնդիրը բզի մեջ չէ, Գուրգեն։

— Անունս Կոկռոշ է...



— Չէ, ես Կոկռոշի հետ ընկերություն չեմ արել, իմ ընկերը Գուրգենն է...

Ծաղիկ խրատական բաժինն արդեն սպառվեց, ու ես նրանց պատմեցի իմ գլխով անցածը։ Լսում էին հետաքրքրությամբ, որջը լցվել էր թանձր ծխով, իբրև հավատարմության նշան, ես ձևաց-նում էի, թե ծխում եմ։ Երբ վերջացրի, ոչ ոք չէր խոսում։

— Էս ջահելի հողն էլ մեր գլխին,— վերջապես հառաչեց Գուրգենը։

— Էհ, մեզ ո՞վ կթողի ուսումնարան երթանք,— տխրությամբ շշնջաց կեղտի ու քուրջերի մեջ կո-րած մի փոքրիկ տղա։

— Փնչո, արևդ թաղեմ,— նրա գլխին բամփեց կռճղանման մի պատանի, խոշոր, արնակալած աչ-քերով։— Էս մեր Փնչոն, ախպեր ջան, ուսումնա-րանի համար հոգի կուտա, իմ աչս որ չեղնի, սաղ օրը դպրոցի դռնեն չի հեռանա։



— Իսկ դու նրա ի՞նչն ես,— հարցրի կոճղամմանին։

— Ե՞ս։ Ես դրա Գաբրիել հրեշտակն եմ, ինքը իմ խմբիս մեջն է...

Հարցրի Փնջոյի իսկական անունը և որտեղացի լինելը։ Եվ նա պատմեց.

— Առաջվա անունս միտքս չէ։ Հերս չկար, մերս սովի տարին մեռավ։ Համ էլ ես հիմի տաս տարեկան եմ, ուսումնարանն էլ... մոտիկ է...

Խիզախ բաներ անցան մտքովս, բայց վախենում էի կորցնել նվաճածս վստահությունը։ Գուրգենն ավելի խիզախ գտնվեց։ Նա հանկարծ հրամայեց.

— Մանր ոտքը դո՛ւրս։— մնացին կոճղամմանը, երկու ուրիշն ու ինքը։— Տղեք, եկեք Փնջոյին ուսումնարան տանք,— սկսեց նա շփոթված նայելով ինձ,— ի՞նչ մտքի ես, ախպրո ջան...

— Փնջո, արեգ թաղեմ, պրաֆիսոր պիտի դառնա,— կատակեց կոճղամմանը։— Կոկոշ ախպորս բիզն էլ... ափսոս ջարդեցինք, թե չէ...— Գուրգենի բռունցքը մուրճի նման իջավ նրա ծոծրակին, ու խոսքը մնաց կիսատ։

— Ախմախի գլուխ. մենք էստեղ մարդավարի բան կխոսանք, ինքը ամբաղ-զամբաղ դուրս կուտա,— փնչաց Գուրգենը։ Երեխին ուսումնարան պիտի ճամփենք, թող խուժան դասակարգի միջին էլ մե անունով մարդ դուրս գա։ Էսքան կաշխատինք, մե երեխեն ինչ է, որ չպահենք...

— Դրա համար ազնիվ աշխատանք պիտի անենք, Գուրգեն,— նկատեցի ես։

Նա դառնորեն ժպտաց։— Ի՞նչ աշխատանք, ախպըրս ջան։ Բոլորիս միատեղ գործ չեն տա, կվախենան, ջոկ-ջոկ էլ ձեռնտու չէ, մեր խուժանական դասակարգը կցրվի...

Այնուամենայնիվ, Փնջոյի հարցը լուծվում էր, ու Գուրգենը «մանր ոտքին» ներս կանչեց։

— Փնջո ախպեր, ուսումնարան կուզե՞ս երթաս։— Փնջոն կամ չհասկացավ, կամ չհավատաց։— Հանաք չէ, քեզ ուսումնարան պիտի տանք, ա՛յ, ախպրոյին հարցրու։

Փնջոն հանկարծ նետվեց նրա գիրկը։ Հեծկլտում էր ու կրկնում.

— Ազիզ ախպերս, հերս, մերս...

...Այդ օրը ես ուշ հեռացա խուժանների թագավորությունից։ Ուղեկցում էին Գուրգենն ու կոճղամմանը։ Նրանք իմ կողքից չէին գալիս, բայց հենց որ հեռվում մի ուշացած անցորդ էր երևում, ես՝ կամ շան կաղկանձյուն էի լսում, կամ բվի կռինչ, այդ իմ պահապաններն էին ինձ սիրտ տալիս։

...Մինչև այդ օրը ոչ ոքի հայտնի չէր իմ կապերի մասին, բայց այլևս միայնակ գործել չէի կարող ու գնացի, ամեն ինչ պատմեցի կոմերիտմիության գավկոմի քարտուղարին։ Հավանություն տվեց, խոստացավ Փնջոյին տեղավորել մեր քաղաքի միակ ինտերնատում, ուր երկաթուղայինների երեխաներն էին սովորում։ Ես ուրախ-ուրախ վերադարձա խուժանների մոտ, պատմեցի ինչ ասել էր ինձ մեր քարտուղարն ու, սպասում էի, որ կբաժանեն իմ ոգևորությունը։ Բայց նրանք ներողամտորեն նայեցին ինձ, ժպտացին ու լռեցին։

— Ինչ որ արեցիր, դրա համար էլ երկնուց գետին շնորհակալ ենք, ախպրո ջան,— վերջապես ծանրորեն ասեց Գուրգենը։— Շատ ու շատ շնորհակալ ենք, բայց մենք մեր երեխին մարդու չենք տա։ Փնջո ջան, լուսաշխարհ արի...

Ինչ-որ պուճախից դուրս սողաց մի տարօրինակ արարած։ Շալվարը մինչև ուսատակերն էր հասնում, պինջակը՝ մինչև կրունկները. գլխին էլ ամերիկյան մի կլոր բերետ՝ փետուրը գագաթին...

— Բոխախ-մորքուրեն պակա՞ս է,— առաջին ան-

*գամ լինելով, կատակեց Դուրգենը,— շալվարը՝ շի-վոտ-կավերկոտ, սլինջակը՝ քոստոն-քնդիկ։ Ախպեր ջան, լավ չէ՞,— նախանձախնդիր դիմեց նա ինձ։— Երեխեն թող շենք ու շնորհք ունենա...*

*Նորից վազ տվեցի գավկոմ։ Քարտուղարը շատ ծիծաղեց, չզիտեմ՝ ինձ վրա, թե Փնջոյի։ Ստիպված էինք առայժմ ենթարկվել խուժանների կամքին ու հարգել նրանց ինքնասիրությունը, այլապես, հարաբերությունները նորից կարող էին իջնել նախկին աստիճանին։*

*Փնջոն դպրոց գնաց. հենց այն դպրոցը, որի դռանը կանգնելու սովորությունն ուներ։ Հաջողությունները կարգի բերեցին մեր կոմերիտական աղջիկները։*

*Դրանից հետո մեր գավկոմը հնար գտավ նաև խուժաններին ազնիվ աշխատանքի վարժեցնելու։ Քաղաքի ամենաքանուկ մասում՝ կենտրոնական հյուրանոցի դիմացը մենք նրանց համար կազմակերպեցինք կոշիկ մաքրողների արտել։ Իհարկե, գործը գլուխ չէր գա, եթե ես չգնայի նրանց մոտ, այս անգամ արդեն մեր քարտուղարի ուղեկցությամբ, ու նա մի ընդարձակ ճառ չասեր։ Գեղեցիկ էր խոսում մեր քարտուղարը. է՛լ համաշխարհային հեղափոխություն, է՛լ պրոլետարիատի դիկտատուրա, է՛լ մահվան ճիրաններում թփրտացող բուրժուազիա, մի խոսքով մեր քաղգրագիտության ամբողջ դասագիրքը... Եվ խուժաններն ամեն ինչ լրիվ հասկացան, այն բանից հետո, երբ մեր քարտուղարը վերջապես հիշեց Փնջոյին ու ասաց.*

*— Երբ մարդ երեխա է ուղարկում դպրոց, նրան պիտի կերակրի իր ճակատի քրտինքով վաստակած հացով...*

*— Ախմախի գլուխներ, հասկացա՞ք,— ժողովն ամփոփեց Դուրգենը։*

* * *

*Այդ օրվանից մեր քաղաքում բոլորն սկսեցին շրջել փայլեցրած կոշիկներով. աշակերտուհիներն էլ այլևս չէին գանգատվում։*

*Իսկ թե ինչ եղավ Դուրգենը, և որտեղ է հիմա Փնջոն. այդ մասին էլ մի ուրիշ անգամ...*

# Հերոսները չեն մեռնում

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության հրամանագիրն ի լուր աշխարհի ազդարարեց. «Հայրենական Մեծ պատերազմի ժամանակ գերման-ֆաշիստական զավթիչների դեմ մղված մարտերում ցուցաբերած արիության և հերոսության համար պարտիզան պիոներ Վալենտին Ալեքսանդրովիչ Կոտիկին շնորհել Սովետական Միության Հերոսի կոչում»։

Սովետական Միության Հերոսի պատվավոր կոչում շնորհվեց նաև Պարֆենտի Գրեչանիին, Դարյա Դյաչենկոյին, Վլադիմիր Մորգունենկոյին, Եֆրոսինյա Զենկովային, Զինաիդա Պորտնովային, Յուոզաս Ալեքսոնիսին, Գուբերտաս Բորիսային, Ալֆոնսաս Չեպոնիսին,..

Ընթերցող, այդ անունները ընդմիշտ պահիր քո հիշողության մեջ. նրանք միշտ պետք է ապրեն քո սրտում, ինչպես ապրում են Զոյայի, Օլեգի, Նելսոն Ստեփանյանի, Հունան Ավետիսյանի անունները։ Սրբությամբ հարգիր նրանց հիշատակը. չէ՞ որ ազատության համար մղված վսեմ պայքարին նրանք նվիրեցին ամենաթանկագին բանն աշխարհում՝ հրապույրներով ու երազներով լի իրենց վառվռուն կյանքը...

Լսիր, ուրեմն, նրանց մասին։

* * *

... 15 տարի առաջ էր։ Խմելյովկա գյուղն էր մտնում թշնամին։ Երեխաները քարացել էին թաքստոցում՝ լսելով մոտեցող մեքենաների հռնդյունը։ Այդ ժամանակ Վալյա Կոտիկը բարձրացավ և նետեց նռնակը...

11 տարեկան էր Վալյան, երբ սկսեց իր պայքարը զավթիչների դեմ։ Մի քանի ամիս անց՝ նա կապ հաստատեց Շեպետովկայի ընդհատակյա կազմակերպության հետ։ Նա թռուցիկներ էր տարածում, գաղտնի ճանապարհով զենք մատակարարում պարտիզաններին։

1943 թվականին Վալյան արդեն Կարմելյուկի անվան պարտիզանական ջոկատի անդամ էր։ Օգոստոս ամսին Վալյան ականներ դրեց երկաթգծի տակ և խորտակեց ֆաշիստական երեք էշելոն։



ՎԱԼՅԱ ԿՈՏԻԿ

Անհրաժեշտ էր կտրել հեռախոսային կապը Վարշավայում գտնվող ռազմակայանի հետ։ Այդ հանձնարարությունն էլ պատվով կատարեց Վալյան։

Մի անգամ Վալյան նկատում է, որ ֆաշիստները ձգտում են շրջապատել պարտիզաններին։ Ինչպե՞ս իմացնել. վազե՞լ, բայց արդեն ուշ է։ Վալյան ձևանում է քնած։ Ֆաշիստական հրամանատարն ու երեք զինվորներ մոտենում են նրան։ Այդ ժամանակ ոտքի է ելնում տղան և նռնակը խփում գետնին։ Ֆաշիստական հրամանատարն ու երեք զինվորները սպանվում են, Վալյան ծանր վիրավորվում է։

Նռնակի պայթյունը գրավում է պարտիզանների ուշադրությունը։ Նրանք իսկույն շրջապատում են ֆաշիստներին և ոչնչացնում նրանց։

Պարտիզանները Վալյային անվանում էին «Արծըվիկ»։ եթե դուք տեսել եք «Արծվիկ» կինոֆիլմը, ապա շատ լավ կհիշեք նրա հերոսին, որը հենց ինքը՝ Վալյան է։

Հետագայում Վալյան էլի է ծանր վիրավորվում՝ իրենց հրամանատարի կյանքը փրկելիս։ Նա հանգիստ չէր կարողանում մնալ։ Պայքարի բուռն ծարավը նրան միշտ կանչում էր դեպի հայրենի անտառները։

1944 թվականին Իզյասլավ քաղաքի մատույցներում Վալենտին Կոտիկը մահացու վերք է ստանում։ Պատանի հերոսը մեռնում է ընկերների ձեռքերի վրա...

Ուկրաինացի պանծալի պիոներ Վալենտին Կոտիկին Սովետական Միության Հերոսի կոչում շնորհելու օրը տոն էր մեր Հայրենիքի բոլոր պիոներների համար։ Տոն էր նաև Շեպետովկայում, որտեղ ապրել, սովորել, պայքարել էր պատանի հերոսը։

* * *

1941 թվականին էր։ Կրիմկա գյուղի դպրոցի դիրեկտոր Վլ. Մորգունենկոյի ղեկավարությամբ ստեղծվեց «Պարտիզանական կայծ» ընդհատակյա կոմերիտական կազմակերպությունը, որի հրամանատար նշանակվեց Պարֆենտի Գրեչանին։ Անտառային խաղաղ բացատում հնչեց Խիզախ պատանիների ու աղջիկների երդումը՝ մինչև վերջին շունչը պայքարել Հայրենիքի համար։

550-ից ավելի խիզախներ բնակչության մեջ ծավալում էին ագիտացիոն աշխատանք, վառ էին պահում մարդկանց հավատը Սովետական Բանակի հաղթանակի նկատմամբ։ Նրանք կազմակերպեցին 200 ռազմագերիների փախուստը մահվան ճամբարներից, պայթեցրին կամուրջներ, երկաթգծեր, խորտակեցին թշնամու գնացքներ, ոչնչացրին հարյուրավոր ֆաշիստների...

Իրենց անմահ փառքով պսակեցին նաև Բելոռուսական Օբոլ կայարանի ընդհատակյա կոմերիտական կազմակերպության անդամները։ Նրանք կազմակերպեցին 20-ից ավելի խոշոր դիվերսիաներ, հրդեհեցին գերմանական պահեստները, պայթեցրին էլեկտրակայանն ու վուշի ֆաբրիկան, խորտակեցին թշնամու էշելոնները։

Այստեղ էր գործում Զինա Պորտնովան։ 1943 թվականին ֆաշիստները բռնեցին 17-ամյա պարտիզանուհուն։ Նրան ենթարկեցին հրեշավոր տանջանքների, բայց նա լռեց, չմատնեց իր ընկերներին։



ՊԱՐՖԵՆՏԻ ԳՐԵՉԱՆԻ



ԴԱՐՅԱ ԴՅԱՉԵՆԿՈ

Գերմանական Օբեր-լեյտենանտն ապշել էր շիկահեր այդ աղջկա համառության վրա։ «Ոչինչ չգիտեմ, չեմ ասի...» Այս էր աղջըկա միակ պատասխանը։ Օգտըվելով հարմար առիթից՝ Զինան հափշտակեց սեղանին դրված ատրճանակը և սպանեց իրեն հարցաքննողներին։ Փողոցում նրան բռնեց ժամապահը։ Երկար ժամանակ Զինային չարչարեցին, հետո կախաղան բարձրացրին։

Բելոռուս ժողովուրդն իր քաջարի դստեր մասին երգեր, լեգենդներ է հյուսել։

* * *

Այդպիսի անմոռաց լեգենդ է նաև Կաունաս քաղաքի ընդհատակյա կոմերիտական կազմակերպության անդամներ Ալեքսոնիսի, Բորիսայի, Ջեպոնիսի գեղեցիկ կյանքը։

Ջեպոնիսը Լենինյան կոմերիտմիության պանծալի սաներից էր։ Պայքարը նրա տարերքն էր։ Իր ընկերների հետ միասին գերմանական էշելոնը խորտակելիս, նա ծանր վիրավորվեց։ Ընկերները նրան տեղափոխեցին հարազատների մոտ՝ Կաունաս։ Տասնութերորդ օրը, երբ նա ոտքի ելավ, հանկարծ սենյակ մտավ այլայլված մայրը և գունատ շուրթերով շշնջաց.

— Նրանք գալիս են, տղաս···

Ֆաշիստները գտել էին Ջեպոնիսի հետքը։ Տղան մորը դուրս ուղարկեց, փակեց դուռը, վերցըրեց ավտոմատն ու նռնակները։ Քիչ հետո սկսվեց կատաղի մարտը. մեկը՝ տասնյակների դեմ։ Վժժում էին գնդակները, փշուր-փշուր թափվում էին լուսամուտների ապակիները։ Հարևան շենքի պատուհանից տկտկաց ֆաշիստական գնդացիրը։ Ջեպոնիսը կրակում էր դիպուկ։ Երբ մնացել էր վերջին նռնակը, նա դուրս եկավ տնից՝ երգելով «Ինտերնացիոնալը»։ Ֆաշիստները հարձակվեցին նրա վրա։ Պայթեց վերջին նռնակը. մի քանի թշնամիներ էլ ոչնչացան։

— Լավ է մեռնել, քան գերի ընկնել, — որոշեց Ջեպոնիսը և, կրծքին դնելով ավտոմատը, քաշեց ձգանը։

* * *

Չկան այս հերոսները, ընթերցող, բայց անմահ են նրանց անունները։ Հերոսները չեն մեռնում։ Հերոսները դարեդար ապրում են ժողովրդի սրտում։ Նըրանց փառքն անթառամ է, յուրաքանչյուր նոր սերունդ հերոսների անմահ փառքն է երգում։

Գ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ


ՅՈՒՕԶԱՍ ԱԼԵՔՍՈՆԻՍ


ԳՈՒԲԵՐՏԱՍ ԲՈՐԻՍԱ


ԱԼՖՈՆՍԱՍ ՋԵՊՈՆԻՍ


ՎԼԱԴԻՄԻՐ ՄՈՐԳՈՒՆԵՆԿՈ


ԵՖՐՈՍԻՆՅԱ ԶԵՆԿՈՎԱ


ԶԻՆԱԻԴԱ ՊՈՐՏՆՈՎԱ



# ԿԱՉԱՂԱԿՆ ՈՒ ԿԿՈՒՆ



ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

(Ավանդություն)

Նկ. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ



1

Կաչաղակի բնում թաքուն
Մի ձու ածեց մի օր կկուն
Ու հենց բնից քիչ հեռացավ,
Իր ձուն իսկույն նա մոռացավ:
Շուտով բնում ձագեր ելան՝
Չալպտուրիկ ու ճղվլան.
Ու դրանց մեջ կար սևորակ
Նաև փոքրիկ մի կկվի ձագ:
Բայց բարեսիրտ կաչաղակը
Դեն չգցեց այդ խորթ ձագը.
Նա կեր տվեց ու խնամեց,
Իր ձագերի պես պահպանեց:
Ձագուկներն էլ՝ ժիր, կչկչան,
Երգում էին.
«Հեյ ջա՜ն, հեյ ջա՜ն,
Երեք քույր ենք
Ու մի եղբայր.
Գիտենք անթիվ
Մենք երգ ու պար:
Մեր եղբորը
Շատ ենք սիրում.
Նրա նման
Սևիկ սիրուն
Չկա՜, չկա՜
Ողջ աշխարհում»:

2

Բայց ովքե՞ր են այդպես վիճում,
Ի՞նչ աղմուկ է այնտեղ ցածում:
Հավաքվեցին, ահա եկան
Թևավորներ ինչքան որ կան,
Երբ օգնեն խեղճ կկուին.
— Էս ի՞նչ բան է, էս ի՞նչ օյին...
Ու կկուն է
Խոսում տաք-տաք.
— Բա չեք ասի,
Խեղճ ու կրակ,
Ես՝ մինուճար,
Ունեմ մի ձագ,
Գողացել է
Կաչաղակը,
Այդ անամոթ
Ավազակը...
— Սու՛տ է ասում,
Զուր է գոռում,
Մայր կաչաղակն
Իրեն օրում
Չի գողացել
Ուրիշի ձագ:
Դու ինքդ ես
Հենց ավազակ,
Որ եկել ես,
Բույնս մտել,
Իբրև կորած
Ձագ ես գտել...
— Ի՞նչ ես խոսում,
Ա՛յ անպիտան,
Մի տես ձագուկն
Ու՞մ է նման:
Դա կկու՞ է,
Թե՝ կաչաղակ:
— Զուր մի՛ հանի
Ճիչ-աղաղակ,
Չեմ կարող տալ
Քեզ ոչ մի ձագ:
Քեզ համա՞ր եմ
Ես թուխս նստել,
Ճտեր հանել
Ու պահպանել...
Ա՛յ, կդիմեմ
Դատավորին,
Թող պատժի նա
Մեղավորին:

3

Շուտով հասավ դատի օրը,
Եկավ բազե դատավորը,
Կաղնու հսկա ճյուղին բազմեց,
Հարցեր տվեց, ողջը պարզեց:
Գտավ, որ այդ հիմար կկուն
Ուրիշ բներ մտնում թաքուն,
Ձու է ածում, թռչում գնում,
Ուտում-խմում, հանգիստ քնում
Եվ տեր կանգնում ուրիշների
Շահած-պահած ձագուկներին:
—Մեկ է,—ասաց,—թե ճուտիկն այն
Ինչ ցեղից է կամ ում նման.
Ձագը նրան է պատկանում,
Ով պահում է ու պահպանում:
Ու հեռացավ
Լուռ, գլխահակ
Կկուն անբույն
Ու անզավակ,
Անվերջ լալով,
Գլխին տալով...
Եվ այդ օրից
Մինչև այսօր,
Այդպես մենակ
Խեղճ ու մոլոր,
Առավոտից
Մինչ իրիկուն
Հառաչում է
Ու հեկեկում.
Կըկու՜...կըկու՜...




Կ. ՊԱՈՒՍՏՈՎՍԿԻ

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Պատի հին ժամացույցի վրայի երկաթյա փոքրիկ դարբինը բարձրացրեց մուրճը։ Ժամացույցը չխկաց, և դարբինը մուրճով զարկեց պղնձյա փոքրիկ սալին։ Մի հապճեպ զնգյուն տարածվեց սենյակով մեկ, գլորվեց գրքերի պահարանի տակ և լռեց։

Դարբինը զարկեց սալին ութ անգամ, ուզում էր զարկել և իններորդ անգամ, բայց նրա ձեռքը ցնցվեց և կախված մնաց օդում։ Այդպես, ձեռքը բարձրացրած, նա մնաց կանգնած մի ամբողջ ժամ, մինչև որ եկավ սալին իններորդ անգամ զարկելու ժամը։

Մաշան կանգնած էր պատուհանի մոտ և ետ չէր նայում։ Եթե ետ նայեր, դայակը՝ Պետրովնան անպայման կարթնանար և կուղարկեր նրան քնելու։

Պետրովնան ննջում էր բազմոցի վրա, իսկ մայրիկը, ինչպես միշտ, գնացել էր թատրոն։ Նա պարում էր թատրոնում, բայց Մաշային երբեք իր հետ չէր տանում այնտեղ։

Թատրոնը շատ մեծ էր, քարե սյուներով։ Նրա տանիքին սև ոտքերի վրա թուջե ձիեր էին կանգնած։ Դրանց զսպում էր, ըստ երևույթին, մի ուժեղ և քաջ մարդ՝ ծաղկեպսակը գլխին։ Նա կարողացել էր տաքարյուն ձիերին կանգնեցնել տանիքի ուղիղ եզրին։ Ձիերի սմբակները կախված էին հրապարակի վրա։ Մաշան պատկերացնում էր, թե ինչ իրարանցում կլիներ, եթե մարդը չզսպեր թուջե ձիերին։ Նրանք կպոկվեին տանիքից, կթռչեին հրապարակ և դղրդոցով ու զրնգոցով կսլանային միլիցիոներների կողքով։

Վերջին մի քանի օրը մայրիկը հուզվում էր։ Նա պատրաստվում էր առաջին անգամ պարել «Մոխրոտիկը» և Պետրովնային ու Մաշային խոստացել էր տանել առաջին ներկայացմանը։ Ներկայացումից երկու օր առաջ մայրիկը սնդուկից հանեց բարակ ապակուց պատրաստած մի փոքրիկ ծաղկեփունջ։ Ծաղկեփունջը մայրիկին նվիրել էր Մաշայի հայրիկը։ Նա ծովային էր և այդ փունջը բերել էր մի հեռու երկրից։

Հետո Մաշայի հայրը գնացել էր պատերազմ, խորտակել ֆաշիստական մի քանի նավ, երկու անգամ քիչ էր մնացել, որ խեղդվի, վիրավորվել էր, բայց կենդանի էր մնացել։ Իսկ հիմա նա նորից հեռու է, «Կամչատկա» տարօրինակ անունը կրող երկրում, և շուտ չի վերադառնա, միայն գարնանը։

Մայրիկը հանեց ապակյա ծաղկեփունջը և կամաց մի քանի խոսք ասաց նրան։ Դա զարմանալի էր, որովհետև առաջ մայրիկը երբեք չէր խոսում իրերի հետ։

— Ահա և դու հասար այս օրվան,— շշնջաց մայրիկը։

— Ո՞ր օրվան,— հարցրեց Մաշան։

— Դու փոքրիկ ես և դեռ ոչինչ չես հասկանում,— պատասխանեց մայրիկը։— Հայրիկը նվիրեց ինձ այս ծաղկեփունջը և ասաց. «Երբ որ դու առաջին անգամ պարես «Մոխրոտիկը», անպայման այս փնջիկը կպցրու քո հագուստին՝ պալատի պարահանդեսից հետո։ Ես կիմանամ, որ դու այդ ժամանակ հիշեցիր ինձ»։

— Այդպես էլ հասկացա,— բարկացավ Մաշան։

— Ի՞նչ հասկացար։

— Ամեն ինչ,- պատասխանեց Մաշան և կարմրեց։ Նա չէր սիրում, որ իրեն չեն հավատում։

Մայրիկն ապակյա փնջիկը դրեց իր սեղանին և ասաց, որ Մաշան չհամարձակվի նկույթով անգամ դիպչել նրան, որովհետև նա շատ փխրուն է։

Այդ երեկո ծաղկեփունջը սեղանի վրա էր և լույսի տակ փայլփլում էր։ Այնպիսի խաղաղություն էր տիրում, որ թվում էր, թե շուրջն ամեն ինչ քնած է. ամբողջ տունը և այգին՝ պատուհաններից այն կողմ, և քարե առյուծը, որը նստած էր ներքևում դարբասի մոտ և ավելի ու ավելի էր սպիտակում ձյունից։ Քնած չէին միայն Մաշան, ջեռուցման մարտկոցը և ձմեռը։ Մաշան պատուհանից նայում էր դուրս, ջեռուցման մարտկոցը կամաց երգում էր իր տաքուկ երգը, իսկ ձմեռը անընդհատ մեծ-մեծ փաթիլներով խաղաղ ձյուն էր թափում երկնքից։ Փաթիլները թռչում էին լապտերների մոտով և նստում գետնին։ Եվ անհասկանալի էր, թե ինչպես էր այդպիսի սև երկնքից այդքան սպիտակ ձյուն թափվում։ Անհասկանալի էր նաև, թե ինչու՞ այս ձմռան ու սառնամանիքի ժամանակ, մայրիկի սեղանի վրա դրված զամբյուղի մեջ ծաղկել էին մեծ-մեծ, կարմիր ծաղիկներ։ Բայց ամենից անհասկանալին ալեհեր ագռավն էր։ Նա նստած էր դուրսը՝ ճյուղին և անթարթ նայում էր Մաշային։

Ագռավը սպասում էր, թե երբ պետք է Պետրովնան գիշերվա համար օդը մաքրելու նպատակով բացի օդանցքը և Մաշային տանի երեսները լվալու։

Հենց որ Պետրովնան ու Մաշան դուրս էին գնում, ագռավը թռչում էր, նստում օդանցքին, խցկվում էր սենյակ, հափշտակում էր աչքի ընկած առաջին իրը և փախչում։ Նա շտապում էր, մոռանում էր գորգի վրա թողած ճանկերի դրոշմը մաքրել և սեղանի վրա թաց հետքեր էր թողնում։ Ամեն անգամ սենյակ վերադառնալով՝ Պետրովնան թափահարում էր ձեռքերը և բացականչում.

— Ավազա՛կ, էլի մի բան թռցրեց։

Մաշան նույնպես թափահարում էր ձեռքերը և Պետրովնայի հետ սկսում էր շտապով որոնել, թե այս անգամ ինչ է թռցրել ագռավը։ Ամենից ավելի ագռավը տանում էր շաքար, թխվածքբեղեն և երշիկ։

Ապրում էր ագռավը փակ վաճառարկղում, որտեղ ամառը պաղպաղակ էին վաճառում։ Ագռավը ժլատ էր և կռվարար։ Իր բոլոր հարստությունը նա կտցով խցկում էր վաճառարկղի ճեղքերը, որպեսզի ճնճղուկները չգտնեն։

Երբեմն գիշերները նա երազում տեսնում էր, իբր թե ճնճղուկները գաղտնի մտել են արկղի մեջ և ճեղքերից կտցահարելով դուրս են հանում սառած երշիկի կտորներ, խնձորի կեղև և կոնֆետի արծաթյա թղթեր։ Այն ժամանակ ագռավը երազում բարկացած կռվում էր, իսկ հարևան անկյունում կանգնած միլիցիոները ետ էր նայում և լսում լռությունը։ Նա վաղուց էր արդեն գիշերները արկղից լսում այդ կռավոցը և զարմանում էր։ Մի քանի անգամ նա մոտեցել էր արկղին և, ձեռքերի ափերով պաշտպանվելով փողոցի լապտերի լույսից, ներս էր նայել։ Բայց արկղի ներսը մութն էր, և միայն հատակին սպիտակին էր տալիս մի կոտրված թասի։

Մի անգամ ագռավը վաճառարկղում բռնեց փոքրիկ գզգզված ճնճղուկին՝ Պաշկային։

Ճնճղուկների կյանքը դժվարացել էր։ Վարսակը բավական քիչ էր, որովհետև քաղաքում համարյա թե ձիեր չէին մնացել։ Հին ժամանակներում, այդ մասին երբեմն հիշում էր Պաշկայի պապը՝ Չիչկին մականունով ծեր ճնճղուկը։ Ճնճղուկների ցեղը ամբողջ օրերով խռնվում էր կառապանների կանգնելու տեղում, որտեղ վարսակը ձիերի տոպրակներից թափվում էր սալարկին։

Իսկ հիմա քաղաքում միայն մեքենաներ են։ Նրանց վարսակով չեն կերակրվում, չեն ծամում խրժռոցով, ինչպես բարեսիրտ ձիերը, այլ սուր հոտ արձակող ինչ-որ թունավոր ջուր են խմում։ Ճնճղուկների ցեղը նոսրացել է։ Ճնճղուկների մի մասը գնացել է դեպի գյուղ, ձիերին ավելի մոտ, իսկ մյուս մասը՝ ծովափնյա քաղաքները, որտեղ նավեր են բեռնում հացահատիկով, և այդ պատճառով, ճնճղուկների կյանքը այնտեղ կուշտ է և ուրախ։

— «Առաջ, — պատմում էր Չիչկինը, — ճնճղուկները հավաքվում էին երամներով, մինչև երկու-երեք հազար հատ։ Երբեմն նրանց երամը երբ վեր էր բարձրանում ու ճեղքում երկինքը, ոչ միայն մարդիկ, այլ նույնիսկ ձիեր էին խրտնում ու փնթփրթում.« Տեր աստված, փրկիր և ողորմա։ Մի՞թե այս չարաճճիներին դատաստան չկա»։

Իսկ ճնճղուկների ինչպիսի՜ մարտեր էին լինում շուկաներում։ Ամպի նման փետուր էր թռչում։ Այդպիսի մարտեր հիմա ոչ մի դեպքում թույլ չեն տա».

Ագռավը Պաշկային բռնեց, երբ նա հենց նոր էր սողոսկել արկղը և դեռ ոչինչ չէր կարողացել դուրս բերել անցքերից։ Նա կտցով հարվածեց Պաշկայի գլխին։ Պաշկան ընկավ և աչքերը չռեց՝ մեռած ձևացավ։

Ագռավը նրան դուրս գցեց վաճառարկղից և մի լավ էլ կռավեց-հայհոյեց ճնճղուկների ողջ խարդախ ցեղին։

Միլիցիոները ետ նայեց և մոտեցավ վաճառարկղին։ Պաշկան պառկած էր ձյան վրա, մեռնում էր գլխի ցավից և միայն կամացուկ բաց ու խուփ էր անում կտուցը։





— Ա՜խ դու, անաստված,— ասաց միլիցիոները, հանեց թաթմանը, Պաշկային դրեց մեջը և թաթմանը Պաշկայի հետ միասին տեղավորեց շինելի գրպանում։

— Տխուր է կյանքդ, ճնճղուկ։

Պաշկան պառկել էր գրպանում, թարթում էր աչքերը և լալիս էր սովից ու վիրավորանքից։

Գոնե մի որևէ փշուր կարելի լիներ կտուցին առնել։ Բայց միլիցիոների գրպանում հացի փշրանք չկար, կար միայն ծխախոտի մանր, որ նրա համար պիտանի չէր։

Առավոտյան Պետրովնան և Մաշան գնացին այգի զբոսնելու։ Միլիցիոները Մաշային մոտ կանչեց և խիստ տոնով հարցրեց.

— Քաղաքացուհի, ճնճղուկ դաստիարակելու կարիք չունե՞ք։

Մաշան պատասխանեց, որ նա ճնճղուկի կարիք ունի և այն էլ շատ։ Այն ժամանակ միլիցիոների հողմահարված, կարմիր դեմքը կնճռոտվեց։ Նա ծիծաղեց և գրպանից հանեց թաթմանը, որի մեջ դրրված էր Պաշկան։

— Վերցրե՛ք։ Թաթմանն էլ հետը, թե չէ կփախչի։ Թաթմանը հետ կբերեք։ Ես պոստից փոխվում եմ ժամը տասներկուսից ոչ շուտ։

Մաշան Պաշկային տուն բերեց, խոզանակով փետուրները հարդարեց, կերակրեց և բաց թողեց։

Պաշկան նստեց ափսեի վրա, մի քիչ թեյ խմեց նրա միջից, հետո մի քիչ նստեց դարբնի գլխին. նույնիսկ սկսեց ննջել, բայց դարբինը վերջիվերջո բարկացավ բարձրացրեց մուրճը, ուզում էր խփել Պաշկային։ Պաշկան աղմուկով թռավ ու նստեց առակախոս Կռիլովի գլխին։ Կռիլովը բրոնզից էր, ողորկ։ Պաշկան հազիվ պահեց իրեն նրա վրա։ Իսկ դարբինը բարկանալով, սկսեց հարվածել սալին և հարվածեց տասնմեկ անգամ։

Պաշկան Մաշայի սենյակում ապրեց մի ամբողջ օր և երեկոյան տեսավ, թե ինչպես օդանցքով ներս թռավ ծեր ագռավը և սեղանի վրայից գողացավ ապխտված ձկան գլուխը։ Պաշկան թաքնվել էր կարմիր ծաղիկներով զամբյուղի ետևը և լուռ նստել էր այնտեղ։

Այդ ժամանակվանից Պաշկան ամեն օր գալիս էր Մաշայի մոտ, փշրանքներ էր կտցում և միտք անում, թե ինչպես հայտնի իր շնորհակալությունը Մաշային։ Մի անգամ նա բերեց Մաշային մի սառած պոզավոր թրթուր, որ գտել էր ծառի վրա, այգում։ Բայց Մաշան թրրթուրը չկերավ, և Պետրովնան փնթփնթալով, լուսամուտից դուրս գցեց։

Այն ժամանակ Պաշկան ծեր ագռավի ջգրու սկըսեց վաճառարկղից թռցնել գողացված իրերը և ետ բերել Մաշային։ Մեկ բերում էր չորացած պատառ, մեկ՝ մի կտոր քարացած թխվածք, մեկ՝ կոնֆետի կարմիր թուղթ։

Ըստ երևույթին, ագռավը գողություն էր անում ոչ միայն Մաշայից, այլ և ուրիշ տներից, որովհետև Պաշկան երբեմն սխալվում էր և բերում էր ուրիշների իրեր՝ սանր, թղթախաղի թուղթ-խաչի թագուհին և «ինքնահոսի» ոսկյա գրչածայր։

Պաշկան այս իրերի հետ ներս էր թռչում սենյակ, գցում էր դրանք հատակին, սենյակում մի քանի պտույտ էր կատարում և սրընթաց, ինչպես մի փետրավոր արկ, դուրս էր նետվում պատուհանից։

Այդ երեկո Պետրովնան ինչ-որ դեռ չէր արթնանում։ Մաշային հետաքրքրում էր, թե ագռավը ինչպես է օդանցքով խցկվում սենյակ։ Նա ոչ մի անգամ այդ չէր տեսել։

Մաշան բարձրացավ աթոռի վրա, բացեց օդանցքը և թաքնվեց պահարանի ետևը։

Սկզբում օդանցքով ձյան խոշոր փաթիլներ էին ներս թռչում և հալչում հատակին, իսկ հետո հանկարծ ինչ-որ բան ճռճռաց։ Ագռավը ներս մտավ, թռավ մայրիկի սեղանի վրա, հայելու մեջ նայեց իրեն, փետուրները ցցեց՝ տեսնելով այնտեղ մի նույնպիսի չար ագռավի, հետո կռավեց, գողի պես



ճանկեց ապակյա ծաղկեփունջը և պատուհանից դուրս թռավ։

Մաշան ճչաց։ Պետրովնան արթնացավ, շատ ախ ու վախ արեց և բարկացավ։ Իսկ մայրիկը, երբ թատրոնից վերադարձավ, այնքան լաց եղավ, որ նրա հետ միասին լաց եղավ և Մաշան։ Իսկ Պետրովնան ասում էր, թե վշտանալու կարիք չկա, գուցե դեռ ապակյա փնջիկը կգտնվի, եթե, իհարկե, հիմար ագռավը ձյան մեջ չի գցել։

Առավոտյան եկավ Պաշկան։ Նա նստեց հանգըստանալու առակախոս Կռիլովի վրա, լսեց գողացած ծաղկեփնջի պատմությունը, փքվեց և մտածմունքի մեջ ընկավ։

Հետո, երբ մայրիկը գնաց թատրոն փորձի. Պաշկան հետևեց նրան։ Ցուցանակի վրայից նա թռչում էր լապտերների սյուների վրա, սյուներից՝ ծառերի վրա, մինչև որ հասավ թատրոն։ Այստեղ նա մի քիչ նստեց թուջե ձիու մռութին, մաքրեց կտուցը, տուտիկով արցունքը սրբեց, ծվվաց և անհայտացավ։

Երեկոյան մայրիկը Մաշային տոնական սպիտակ գոգնոց հագցրեց, իսկ Պետրովնան դարչնագույն ատլասե շալ գցեց ուսերին և բոլորը միասին գնացին թատրոն։ Հենց այդ ժամին Պաշկան Չիկչինի հրամանով հավաքեց մոտերքում ապրող բոլոր ճնճղուկներին, և նրանք ամբողջ երամով հարձակվեցին արկղի վրա, որտեղ թաքցրած էր ապակյա ծաղկեփունջը։

Ճնճղուկները, իհարկե, իսկույն չհամարձակվեցին հարձակվել վաճառարկղի վրա, այլ նստոտեցին հարևան տանիքներին և մի երկու ժամ փորձում էին չարացնել ագռավին։ Նրանք կարծում էին, որ ագռավը կբարկանա և դուրս կթռչի վաճառարկղից։ Այն ժամանակ կարելի կլինի կռիվ սարքել փողոցում, որտեղ տեղը այնքան նեղ չի, ինչպես արկղում, և որտեղ բոլորը միասին կարող են հարձակվել ագռավի վրա։ Բայց ագռավը գիտուն էր, գիտեր ճնճղուկների խորամանկությունները և արկղից դուրս չէր գալիս։

Այն ժամանակ ճնճղուկները վերջապես սիրտ առան և սկսեցին մեկը մյուսի ետևից խցկվել արկղը։ Այստեղ այնպիսի աղմուկ-աղաղակ և քաշքշուկ սկսվեց, որ վաճառարկղի շուրջը իսկույն ամբոխ հավաքվեց։

Մոտ վազեց միլիցիոները։ Նա նայեց վաճառարկղի ներսը և վախեցած ետ քաշվեց. ճնճղուկների փետուրները թռչում էին ամբողջ արկղով մեկ, և այդ փետուրների մեջ ոչինչ հնարավոր չէր ջոկել։

— Ա՛յ, ինչ եմ ասել,—ասաց միլիցիոները—սա իսկական ձեռնամարտ է կանոնների համաձայն։

Վաճառարկղի մեխված դուռը բաց անելու և կռիվը դադարեցնելու համար, միլիցիոները սկսեց պոկել տախտակները։

Այդ նույն ժամանակ թատրոնական նվագախմբի ջութակների և թավջութակների բոլոր լա-

րերը կամացուկ ցնցվեցին։ Բարձրահասակ մարդը թափահարեց իր գունատ ձեռքը, հետո դանդաղ տարածեց, և երաժշտության աճող որոտի տակ ծանր վարագույրը օրորվեց, թեթև սահեց մի կողմ, և Մաշան տեսավ արևի դեղին ճառագայթներով ողողված մի մեծ, գեղեցիկ կահավորված սենյակ ու հարուստ, տգեղ քույրերին, և՛ չար, խորթ մորը, և՛ իր Նիհար ու գեղեցիկ մայրիկին՝ մաշված մոխրագույն հագուստով։

— Մոխրատիտիկը,— կամաց բացականչեց Մաշան և այլևս չկարողացավ աչքերը հեռացնել բեմից։

Այստեղ երկնագույն, վարդագույն, ոսկեղեն և լուսնի փայլուն շողերի մեջ երևաց պալատը։ Եվ մայրիկը այստեղից փախչելիս աստիճանների վրա կորցրեց իր բյուրեղապակյա կոշիկը։

Շատ լավ էր, որ երաժշտությունը անընդհատ մեկ տխրում, մեկ ուրախանում էր մայրիկի համար, կարծես թե այդ բոլոր ջութակները, թավջութակները, սրինգները և քնարը կենդանի, բարի արարածներ լինեին։ Նրանք բարձրահասակ դիրիժորի հետ միասին, ամեն կերպ աշխատում էին օգնել մայրիկին։ Իսկ դիրիժորը այնքան էր զբաղված մայրիկին օգնելով, որ ոչ մի անգամ նույնիսկ ետ չնայեց դեպի դահլիճը։

Եվ շատ ափսոս, որովհետև դահլիճում հիացմունքից այրվող աչքերով բազմաթիվ երեխաներ կային։

Նույնիսկ ծեր հանդերձապահները, որոնք երբեք ներկայացում չեն դիտում, այլ կանգնած են միջանցքներում՝ դռների մոտ, ծրագրերը և մեծ, սև հեռադիտակները ձեռքներին,—նույնիսկ այն ծեր հանդերձապահները անաղմուկ մտան դահլիճ, իրենց ետևից ծածկեցին դռները և նայում էին Մաշայի մայրիկին։ Իսկ մեկը նույնիսկ սրբում էր աչքերը։ Եվ ինչպե՞ս նա չլացակումեր, երբ այդպես լավ էր պարում իր մեծ ընկերոջ՝ իր նման մի հանդերձապահի աղջիկը։

Եվ ահա, երբ վերջացավ ներկայացումը, և երաժշտությունը այնքան բարձր և ուրախ երգեց երջանկության մասին, որ մարդիկ իրենք իրենց ժպտացին և միայն տարակուսում էին, թե ինչու երջանիկ Մոխրատիտիկի աչքերին արցունքներ են փայլում, ահա հենց այդ ժամանակ, ետ ու առաջ սավառնելով թատրոնական աստիճանների վրայով, ներս ընկավ դահլիճ մի փոքրիկ, գզգզված ճնճղուկ։ Առաջին իսկ հայացքից երևում էր, որ նա դուրս է պրծել մի դաժան մարտից։

Հարյուրավոր կրակներից շլացած՝ նա պտտվեց բեմի վրա, և բոլորը նկատեցին՝ որ նրա կտուցին ինչ-որ բան անասելի փայլում է, կարծես բյուրեղապակյա մի ճյուղիկ լինի։

Դահլիճը աղմկեց և հանգստացավ։ Դիրիժորը ձեռքը բարձրացրեց և կանգնեցրեց նվագախումբը։ Վերջին կարգերում մարդիկ սկսեցին ոտքի ելնել, որպեսզի տեսնեն, թե ինչ է կատարվում բեմի վրա։ Ճնճղուկը թռավ դեպի մոխրատիտիկը։ Մոխրատիտիկը ձեռքը մեկնեց դեպի նա, և ճնճղուկը գցեց նրա ափի մեջ մի փոքրիկ բյուրեղապակյա ծաղկեփունջ։ Մոխրատիտիկը դողացող ձեռքերով կպցրեց փնջիկը իր հագուստին։ Դիրիժորը թափահարեց փայտիկը, և նվագախումբը որոտաց։ Թատրոնի էլեկտրական լամպերը դողացին ծափահարություններից։ Ճնճղուկը թռավ դեպի դահլիճի առաստաղը, նստեց ջահի վրա և սկսեց մաքրել կռվում գզգզված փետուրները։

Մոխրատիտիկը գլուխ էր տալիս և ծիծաղում, իսկ Մաշան, եթե հաստատ չիմանար, երբեք գլխի չէր ընկնի, որ այդ Մոխրատիտիկը իր մայրիկն է։

Իսկ հետո, իրենց տանը, երբ հանգցրին լույսը, և ուշ գիշերը մտավ սենյակ ու բոլորին հրամայեց քնել, Մաշան կիսաքուն հարցրեց մայրիկին.

— Երբ դու կպցնում էիր փնջիկը հագուստիդ, հիշեցի՞ր հայրիկին։

— Այո՛,—պատասխանեց մայրիկը մի փոքր լռելուց հետո։

— Իսկ ինչու՞ ես դու լալիս։

— Որովհետև ուրախանում եմ, որ աշխարհում կան այնպիսի մարդիկ, ինչպիսին քո հայրիկն է։

— Ճիշտ չէ,—մրմնջաց Մաշան,—ուրախությունից ծիծաղում են։

— Փոքրիկ ուրախությունից ծիծաղում են,—պատասխանեց մայրիկը,—իսկ մեծ ուրախությունից լաց են լինում։ Իսկ հիմա քնի՛ր։

Մաշան քնեց։ Քնեց և Պետրովնան։ Մայրիկը մոտեցավ լուսամուտին։ Դրսում՝ ճյուղի վրա քնած էր Պաշկան։ Խաղաղ էր աշխարհում, և խոշոր ձյունը, որ թափվում էր ու թափվում երկնքից, ավելի ու ավելի էր ավելացնում խաղաղությունը։ Եվ մայրիկը մտածեց, որ հենց այսպես էլ, ձյան նման, իջնում են մարդկանց վրա երջանիկ երազներ ու հեքիաթներ։

Թարգմ. Լ. ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆ




**Բաժինը վարում է պրոֆեսոր ԳԻՏՈՒՆՅԱՆԸ**

# ՄԱՐԴՆ ՈՒ ՄԵՔԵՆԱՆ

Շատ-շատ տարիներ առաջ մարդն ապրել է քարանձավներում: Նրան որպես հագուստ ծառայել են սպանված կենդանիների մորթիները, իսկ որպես զենք՝ միայն քարերն ու ծառերը, որոնցով նա պաշտպանվել է վայրի գազաններից:

Մի օր, հորդառատ անձրևից հետո, այն քարանձավի մուտքի առաջ, որտեղ ապրել է նախնադարյան մարդկանցից մեկը, մի ապառաժ է փլվել: Քարանձավի բնակիչը ինչքան էլ որ տանջվել է այդ հսկայական քարը ձեռքերով տեղից շարժելու համար, ոչինչ չի կարողացել անել: Այն ժամանակ նա մտածել է օգտագործել մոտերքն ընկած ծառի հաստ ու ամուր բունը: Եվ նա բունը ապառաժի տակ խորելով շարժել է այն:

Այն օրը, երբ մարդն իր այդ «լծակով» շարժել է ապառաժը տեղից, կարելի է համարել մեքենայի ծննդյան օրը: Գուցե դուք կզարմանաք, որ այն փայտի կտորը, որ որպես լծակ է ծառայել քարանձավի վայրի բնակչին, մենք մեքենա ենք անվանում: Որովհետև «մեքենա» ասելով մենք սովորաբար պատկերացնում ենք զանազան անիվներ, պտուտակներ, ունկեր և էլի ուրիշ տեսակի մասեր: Կան նաև այնպիսի բարդ մեքենաներ, ինչպիսին ժամացույցն է, ավտոմեքենան, շոգեմեքենան, ինքնաթիռը:

Բայց այդ բարդ մեքենաները միանգամից չէ, որ երևան են եկել: Լծակից հետո մարդը հայտնաբերել է անիվը: Դրանից հետո ստեղծել է ճախարակը, որի օգնությամբ մենք մինչև այժմ էլ ծանր առարկաներ ենք բարձրացնում: Ավելի ուշ նա սկսել է առանձին պարզ մեխանիզմները վերածել ավելի բարդ մեքենաների:

Այն ժամանակվանից, երբ քարանձավի մեր նախահայրը հայտնաբերեց լծակը, անցել են հազարավոր տարիներ:

Մի օր, Ֆրանսիայում ապրող մի երիտասարդ, Դենիս Պապեն անունով, իր համար նստած էր տանը՝ վառարանի առաջ: Վառարանի վրա դրված էր ջրով լի մի աման: Երբ նրա միջի ջուրը սկսում է եռալ, Պապենը նկատում է, որ կափարիչը վեր-վեր է ցատկում: Նրանից առաջ շատերն էին այդպիսի բան տեսել, բայց ոչ ոքի մտքով չէր անցել դրա պատճառը փնտրել: Հետաքրքրասեր Դենիսը միտք է անում և գլխի ընկնում, որ ջրի գոլորշուց է վեր-վեր ցատկում ամանի կափարիչը:

«Արդյոք չի՞ կարելի գործի դնել այդ գոլորշին,— ինքն իրեն հարց է տալիս Դենիս Պապենը: — Չե՞մ կարող շոգեմեքենա սարքել»:

Եվ Պապենին հաջողվում է այդ անել: Նրա շոգեմեքենան, ճիշտ է, այնքան էլ հաջող չի լինում, բայց կարևորն այն է, որ գործի սկիզբն արդեն դրված էր:

Դրանից հետո ռուս մեխանիկ Պոլզունովը և անգլիացի Ջեյմս Ուատը ավելի լավ շոգեմեքենաներ են սարքում:

Շատ հաստոցներ սկսում են աշխատել գոլորշիով, մարդիկ շոգենավեր են սարքում, իսկ դրանից հետո՝ նաև շոգեկառքեր: Եվ նրանք կարծիում էին, թե շոգեմեքենայից ավելի կատարյալ մեքենա լինել չի կարող: Բայց շուտով գալիս է այնպիսի մի ժամանակ, երբ էլեկտրականությունն է գործի դրվում:

Մեծ գետերի կողքին մարդը սկսում է ջրամբարներ կառուցել, որոնց մեջ ջուրը հավաքվում է և ապա բարձր տեղից խողովակներով բաց թողնվում: Այդ խողովակների ծայրերին տուրբիններ են դրվում: Տուրբինները նման են ջրաղացի թիականման անիվներին: Ջուրը մեծ արագությամբ պտտում է տուրբինները, իսկ տուրբինները էլ իրենց հերթին պտտում են էլեկտրական մեքենաների հսկայական անիվները:



Եվ այդպիսով, էլեկտրական հոսանքը նամբա է ելնում կենտրոնից, լարերի միջոցով հասնում է քաղաքներն ու գյուղերը: Նա լուսավորում, տաքացնում է տները, մեր նաշն է եփում, ջրերը հարթուկում, շարժման մեջ դնում շատ մեքենաներ:

Ինչ տեսակ մեքենաներ ասես, որ հիմա չկան աշխարհում: Մեքենաներ, որոնք շարժվում են քարածխով, նավթով, բենզինով կամ էլեկտրականությամբ: Բայց մարդը երբեք չի գոհանում եղածով, նա երբեք մի տեղում կանգնած չի մնում: Ա՛յ, հիմա նա հարց-

նում է ինքն իրեն. «Արդյոք չի՞ կարելի այնպիսի մի մեքենա ստեղծել, որը կարողանա մտածել»:

Առաջին հայացքից դա զարմանալի և անհավանական կթվա ձեզ: Բայց իմացեք, որ այժմ արդեն գոյություն ունեն հաշվիչ մեքենաներ, որոնք անսխալ կերպով գումարում են, հանում, բազմապատկում, բաժանում:

Սարքված են նաև թարգմանիչ-մեքենաներ: Երբ այդպիսի մի մեքենայի բեռնադրենք մի պատմվածք, ասենք՝ ֆրանսերեն, մյուս երեսին նույն պատմվածքը դուրս կգա տպված անգլերեն կամ ռուսերեն: Կան մեքենաներ, որոնք այնպիսի գործեր են կատարում,



որ կարող է անել միայն շատ խելացի մարդը: Ստեղծված է նաև այնպիսի մի մեքենա, որ կարող է շախմատ խաղալ:

Կարդալով այս, երեխաներ, դուք կարող եք կարծել, թե մեքենան լիովին կարող է փոխարինել մարդուն կամ, գուցե կմտածեք, թե սովորելու կարիք չկա, քանի որ գոյություն ունեն մեքենաներ, որոնք մարդկանց գործերի մեծ մասը կարող են անել:

Բայց դա միանգամայն սխալ է: Միայն խելոք, գիտուն և կրթված մարդը կարող է ստեղծել ու ղեկավարել մեքենաները: Առանց մարդու, առանց գիտուն մարդու, մեքենան ինքը չի կարող ուրիշ մեքենաներ շինել: Ինչքան շատ ենք հեռանում քարանձավի բնակիչ մեր նախահայրերի ժամանակվանից, այնքան ավելի հարկ է լինում շատ բան գիտենալ, որպեսզի կարողանանք շատ բան անել:






## ՀԱՂՈՐԴՈՒՄ ՍՏԱՄՈՔՍԻՑ

Շվեդացի բժիշկ Բերտիլ Յակոբսոնը՝ բժշկական ինստիտուտի մի խումբ աշխատակիցների հետ ստեղծել է շատ հետաքրքիր մի գործիք, որը կոչվում է էնդոռադիոզոնդ կամ «ռադիոդեղահատիկ»:

Սա սեփական ռադիոկայան ունեցող ավտոմատ լաբորատորիա է: Բայց այդ լաբորատորիան փշատի կորիզից հազիվ մի քիչ մեծ լինի. տրամագիծը 10 միլիմետր է, իսկ երկարությունը՝ 28: Իհարկե, եթե չլինեին կիսահաղորդիչները, այդքան բարդ ու փոքրիկ գործիք անհնար էր ստեղծել:

Հիվանդը երբ կուլ է տալիս այդ «ռադիոդեղահատիկը», վերջինս շարժվելով մարսողական օրգաններով՝ անընդհատ չափում ու պայմանական նշաններով հաղորդում է մարմնի ջերմությունը, աղյան ճնշումը, թթվայնության աստիճանը և մի քանի այլ կարևոր տեղեկություններ. Իսկ դա տևում է մեկ ու կես օրից մինչև մի շաբաթ, որովհետև «ռադիոդեղահատիկը» շատ դանդաղ է շարժվում: Նրա շարժումն ու աշխատանքին հետևում են փոքրիկ ռադիոլոկատորի միջոցով, որը կապած է լինում հիվանդի մարմնին:

## ՀԵՏԱԽՈՒՅԶ ԲՈՒՅՍԵՐ

Գիտությունը օգտակար հանածոների որոնման նոր մեթոդ է գտել՝ բույսերի օգնությամբ: Բույսերը կողմնացույցի նման երկրաբանին հուշում են, թե որտեղ կարելի է փնտրել ստորերկրյա մառանները:

Բույսերի միջոցով հանածոներ գտնելու գաղափարը նոր չէ, բայց միայն վերջերս է պարզվել, թե ինչ կապ կարող է լինել բույսերի և հողի տակ թաքնված գանձերի միջև:

Այս գործում մեծ ծառայություն են կատարել տարբեր երկրների գիտնականները և ամենից առաջ, սովետական գիտնականներ՝ ակադեմիկ Վ. Ի. Վինոգրադովը, նրա աշակերտ ու հետևորդ Ա. Պ. Վինոգրադովը և երկրաբանական գիտությունների դոկտոր Դ. Պ. Մալյուգը:

Եթե հողը հարուստ է այս կամ այն հանույթով, ասենք՝ ցինկով, պղնձով, ուրանով կամ ոսկով,

ապա բույսերի մեջ դրանք սովորականից ավելի շատ են լինում:

Կան բույսեր, որ սովորաբար աճում են այնպիսի տեղերում, որտեղ իրենց սիրած մետաղներից շատ կա: Բույսեր էլ կան, որ այս կամ այն մետաղի ազդեցությամբ փոխում են իրենց գույնն ու ձևը: Օրինակ, եթե հնգաթերև մանուշակը ունի վառ լրացուցիչ գույն, ուրեմն նրա տակ ցինկի շերտ կա: Տուվայի ավտոնոմ մարզում դեղին ծաղիկների միջոցով գտնվել են շատ օգտակար հանքեր: Միջին և Հարավային Ուրալում նիկելի հանքեր են հայտնաբերել խավավոր կուժկոտրուկները: Կարմիր և վարդագույն ասպրիկների, մանուշակների, սպիտակ յարուտկաների, աստրագալների միջոցով՝ պղնձի, ցինկի, ուրանի, սելենի հանքեր են գտնվել մեզ մոտ, Արևմտյան Եվրոպայում և Ամերիկայի Միացյալ Նահանգներում:

Բրյուսելում բացված Համաշխարհային ցուցահանդեսի սովետական տաղավարում այցելուները տեսնում են ապակուց ու մետաղից պատրաստված այն հիանալի մակետներն ու ստենդները, որոնք պատկերում են մեր գիտնականների աշխատանքը: Այդպիսի ստենդներից մեկը պարզ ու համոզիչ կերպով ցույց է տալիս, թե բույսերը ինչպես են իրենց մեջ հավաքում այս կամ այն հանքանյութը:

Մեր երկրի շատ օդանավակայաններում ամպեր ցրելը դարձել է շատ սովորական մի բան:

Օդերևութաբանները այժմ աշխատում են ստեղծել արհեստական ամպեր: Այս ուղղությամբ մեծ փորձ է կուտակել Ֆրանսիայի Պյուի-դե Դոմի լեռնային լաբորատորիայի գիտաշխատող Դեսսանը: Դեպի կարկտաբեր ամպերն ուղարկելով արծաթ պարունակող յոդ, նա կարողացել է վնասակար կարկուտը փոխարինել կենսաբեր անձրևով և փրկել ցանքսերը:

Բելգիական Կոնգոյի արևադարձային խոնավ անտառներում հարյուր հեկտար տարածություն զրկել են բուսականությունից և ծածկել փայտածուխով, այսինքն՝ այդ տարածությունը հրդեհել են:

Այդ սև ծածկույթը ագահաբար կուլ է տալիս արևի կիզիչ ճառագայթները և արագորեն վերածվում մի վիթխարի շիկացած սալի: Այդտեղից անընդհատ վեր է բարձրանում օդի տաք հոսանք, որն իր մեջ է ներծծում շրջապատի արևադարձային անտառների խոնավ գոլորշին: 1500 մետր բարձրության վրա օդը հովանում է, իսկ գոլորշին խտանում ու դառնում է արհեստական ամպ: Եթե քամի բարձրանա ու հեռու քշի այդ ամպը, նրա փոխարեն անմիջապես նորը կստեղծվի: Երբ այդ ամպերը անցնում են անտառների գոտին և հայտնվում ջրի կարիք զգացող դաշտերի վրա, կարելի է արհեստական անձրև բերել դեպի ամպերն ուղարկելով պինդ ածխաթթու կամ արծաթ պարունակող յոդ:

## ԱՐՀԵՍՏԱԿԱՆ ԱՄՊ, ԱՐՀԵՍՏԱԿԱՆ ԱՆՁՐԵՎ

Այժմ օդերևութաբանությունը աշխատում է ոչ միայն ուսումնասիրել ու նախատեսել եղանակը, այլև ուղղություն տալ նրան:

Մի քանի տարի առաջ, Հոկտեմբերյան ռևոլյուցիայի տոնի օրը մոսկվացիները սխալվեցին, կարծելով, թե իրենց բախտից էր, որ նախքան շքերթն սկսվելը միանգամից ցրվեցին Կարմիր հրապարակի վրա կիտված ամպերը, և անձրև տեղաց միայն շքերթից հետո:

Ինչպես հետո պարզվեց, այդ «հրաշքը» կատարել էին այն չորս ինքնաթիռները, որոնք օդ բարձրանալով ցրել էին Մոսկվայի երկնակամարում ծանրացած ամպերը:

## 510 ՀԱՐԿԱՆԻ ՏՈՒՆ

Ամերիկացի նշանավոր ճարտարապետ Ռայտը մշակել է աշխարհում ամենաբարձր շենքի նախագիծ: Շենքը ունենալու է 510 հարկ և 1.704 մետր բարձրություն: Այդտեղ կարելի է տեղավորել հարյուր հազար մարդ: Այդ վիթխարի շենքը նախատեսված է կառուցել Միչիգան լճի ափին, բետոնից, պողպատից, ապակուց և մի շարք այլ նոր շինանյութերից:

## ԱՐՏԱՍՈՎՈՐ ՎԱՌԱՐԱՆ

Ավստրիական և գերմանական երկու ֆիրմա միաժամանակ կառուցել են շատ հետաքրքիր մի վառարան: Ձուկ, ձու, պտուղներ եփելու համար հարկավոր է ընդամենը 30 — 60 վայրկյան, իսկ հավի ճուտը եփվում է երեք րոպեում: Ճաշերը կարելի է եփել ոչ միայն մետաղյա, այլև ապակե և նույնիսկ թղթե ամանների մեջ:




Շապիկի առաջին էջը՝
նկ. Ն. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



**Այս համարի հետ տրվում է ձրի հավելված հոկտեմբերիկների համար**

# ՄԱՆԿԱԿԱՆ ԿԱՐՃ ՊԱՏՄՎԱԾՔՆԵՐԻ ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ

Այս տարվա հունվարին «Պիոներ» ամսագրի խմբագրությունը հայտարարել էր մանկական կարճ պատմվածքի մրցանակաբաշխություն։

Մրցանակաբաշխության ժյուրին քննության առնելով ներկայացված 120 պատմվածքները, գտավ, որ պատմվածքներից և ոչ մեկը առաջին մրցանակի արժանի չէ։

Երկրորդ մրցանակ (2000 ռուբլի գումարով) ստացան Աղավնու «Ինչից սկսվեց» (դեվիզ «Փնջը») և Վալտեր Արամյանի «Վաղը նորից լվացք կփռեն» (դեվիզ «Սեզում») պատմվածքները։

Երրորդ մրցանակ (1000 ռուբլի գումարով) տրվեց Վալտեր Արամյանի «Իմ ընկեր Ասոն» պատմվածքին (դեվիզ «426»)։

Բացի այդ, ժյուրին տպագրության հանձնարարեց Բ. Սեյրանյանի «Առաջին որսը», Կ. Դալլաքյանի «Իսկական ծմեռ պապին», Բ. Եզդանյանի «Հետաձգված խաղը» և Ժիրայր Ավետիսյանի «Ընկերներ» պատմվածքները։



Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Ռ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Ռ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.։

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—41—83, 2—59—06։

ՎՖ 05245. Պատվեր 823. Տպաքանակ 6000։ Տպագրական 4,5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 14/VIII 1958 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։ Գինը 2 ռ.



## ԱՆՀԱՄԲԵՐ ՁԿՆՈՐՍԸ

Մի անգամ Արամը հայրիկի հետ գնաց գետափ՝ ձուկ որսալու։ Նոր էին կարթերը գցել ջուրը, երբ Արամն սկսեց ինչ-որ եղանակ սուլել։

—Սուլել չի կարելի,—կամաց զգուշացրեց հայրիկը։

Աղայանը, 9. Սունդուկյան, 10. Անդերսենի։ Ուղղահայաց վանդակներում՝ Շիրվանզադե։

տարան, ճախարակ, մագաղաթ, գավազան, կաղապար, ճաշարան և այլն։

4. Երեք սագ։ Թռչում էին մեկը մյուսի ետևից։



Արամը լռեց, բայց քիչ հետո նկատելով ծաղկի վրա իջած գույնզգույն թիթեռին, մոռացավ հայրիկի ասածը և սկսեց բարձր ձայնով երգել.

Սիրուն թիթեռ, ինձ ասա,
Թե ինչո՞վ ես դու ապրում...

—Ա՛յ տղա, երգելու ժամանա՞կ ես գտել,—նորից զգուշացրեց հայրիկը,—բա ձկնորսը երգ կասի՞:

Մի քանի րոպե լուռ մնալուց հետո հանկարծ Արամը ամբողջ ձայնով մեկ գոռաց.

—Հայրի՛կ, հայրի՛կ, ձուկ է գալիս քո կողմը, զգույշ եղիր:

Արամի ձայնից ձուկը ետ փախավ ու սուզվեց ջրի խորքը:

—Դու ականջ ունե՞ս, թե չէ,—այս անգամ արդեն բարկացած ասաց հայրիկն ու ոտքի ելավ,—քեզ չասի՞, որ խոսել չի կարելի: Որսը դու ես փախցնում ու դեռ





ասում ես, որ ես զգույշ լինեմ։ Չէ՛, կողքիդ որ մնամ, ոչ մի ձուկ էլ չեմ բռնի։



Արամը կախեց գլուխը և աչքի պոչով նայեց հայրիկին, որը մի քանի քայլ հեռանալով՝ կարթը նորից գցեց ջուրը։ «Օ՜ֆ, ի՜նչ դժվար բան է ձուկ բռնելը,- դժգոհեց Արամը,- հայրիկը ինչպե՞ս է համբերում»։

Շատ չէր անցել, երբ ավելի մեծ ու գեղեցիկ մի թիթեռ, քսվելով Արամի դեմքին՝ թռավ դեպի գետեզերքի ծաղիկները։

Մեր ձկնորսը մոռացավ ամեն ինչ և, ներքև գցելով կարթաձողը, վազեց թիթեռի ետևից։ Թիթեռը գնաց ու նստեց գետին թեքված ծառի ճյուղին։ Արամը մագլցեց ծառը, մի ձեռքով կախվեց ճյուղից, իսկ մյուսը երկարեց, որ բռնի թիթեռին։ Այդ ժամանակ ճյուղը ջարդվեց, և Արամը երեսնիվար ընկավ ջուրը։ Լավ է, որ հայրիկը հեռու չէր և վազելով եկավ ու փրկեց նրան։

*Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ*






Լ. ԲԱՌՆԱԿՅԱՆ

Փոքրիկ աղջիկ է Վարդուհին, սև ու փայլուն աչքերով, երկար ու սև հյուսքերով։ Նա մի մեծ գնդակ ունի, կապույտ ու կարմիր ներկված։

— Տուր գնդակդ մի քիչ խաղամ, —նրան մոտենալով խնդրեց Վարուժանը։

Վարդուհին դեմքը ծամռեց ու գնդակը կրծքին սեղմեց.

— Ինչու՞ տամ, ոտքո՞վ խփես...

— Չէ՛, չէ՛, Վարդուհի, ձեռքով կըխաղամ, կուզես եկ միասին խաղանք։

— Ո՛չ, ո՛չ, իմ գնդակը ես ո՛չ ոքի չեմ տալիս։

Շատ նեղացավ Վարուժանը, բայց Վարդուհուն ոչինչ չասաց։ Գնաց իրենց բակը, վերցրեց երկար ձողը, ձի դարձրեց, հեծավ ու քշեց Կիրովական, Լենինական, Արթիկ, Սևան, հետո եկավ Երևան։ Եկավ տեսավ լաց է լինում Վարդուհին։

— Ի՞նչ է պատահել քեզ, Վարդուհի, հո գնդակդ չե՞ն խլել...

— Ոչ, աչքերը սրբելով, մատը ծաղկանոցի կողմը մեկնեց Վարդուհին, —գնդակս գնաց ընկավ այնտեղ։ Հիմա քեռի Մելիքը կգա, գնդակս էլ չի տա...

Վարուժանը «ձին» թողեց Վարդուհու մոտ, զգույշ մտավ ծաղկա-

նոց, վերցրեց գնդակն ու գլորեց դուրս։

Վարդուհին շատ ուրախացավ, սրբեց աչքերն ու նորից գրկեց գնդակը։

Վարուժանը հպարտ-հպարտ վերադարձավ ու կանգնեց Վարդուհու դիմաց։

Վարդուհին, երբ նրան նայեց, կարմրեց ու գլուխը կախեց. երևի իր արածից ամաչեց։



Նկ. Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ




ԷԴ. ԱՎԱԳՅԱՆ

— Ամպել է օրը, իմ սիրուն ծիտիկ,
Ու անձրևը քեզ, տե՛ս, ո՞նց է թրջել,
Ա՜խ, ինչո՞ւ ես դու անձրևից սաստիկ
Նստել թաց ճյուղին, չես ուզում թռչել։

Անձրևն է գալիս, ու դու չես գնում,
Գուցե տուն չունես դու այստեղ մոտիկ,
Թե որ տուն չունես, էլ ո՞ւր ես մնում,
Արի մեր տունը, իմ սիրուն ծիտիկ։

**ՀԱՆԵԼՈՒԿ**

*Ալ է ներկում թշերը,*
*Ջորս դին պատում փշերը,*
*Մեծ ու պստիկ չի ջոկի,*
*Ձեռք տվողին կծակի։*

*(նմուշ)*

Ա. ՆԵՐՍԻՍՅԱՆ

# Վաղը նորից լվացք կանեն

Վ. ԱՐԱՍՅԱՆ



**Պատմվածքն արժանացել է «Պիոներ» ամսագրի մրցանակաբաշխության երկրորդ մրցանակին**

Քուքիկն ապրում էր մի բակում, որտեղ երեխաներ շատ կային։ Բակի մայրերը հաճախ էին լվացք անում, իսկ Գագիկի մայրիկը՝ գրեթե ամեն օր։

— Օճառի հոտը չեմ սիրում,— տրտնջում էր Քուքիկը։

— Իսկ ինձ համար միևնույն է,— պատասխանեց փիսոն ու կամաց մռմռաց։

Տոթ էր։ Ամռան տոթ երեկո, բայց դեռ լվացքը չէին հավաքել։

— Ամեն օր լվացք, ամեն օր լվացք։ Ինչպե՞ս է, որ այս մայրիկները չեն ձանձրանում։



— Դու անխելք ես, քութո,— նկատեց փիսոն։

— Ինչպե՞ս։

— Խելք չունես, ասում եմ, անխելք ես։

— Էդ ինչո՞ւ։

— Ինչո՞ւ։ Նայիր լվացքի պարանին՝ կհասկանաս։ Միայն քո Գագիկի շորերն են փռած։ Ամեն օր նրա շորերն են լվանում, բայց էլի չեն հասցնում։ Ես շատ եմ սիրում Նվարդ քույրիկին, նա էլ ինձ պես մաքրասեր է։ Ամեն օր լվացք է անում և լավ է անում։ Ինչպե՞ս կարելի է կեղտոտ երեխային դըպրոց ուղարկել։

— Գագիկը լավ տղա է,— ասաց քութիկը,— մաքուր տղա է, ես լավ գիտեմ։

— Լա՜վ գիտես,— ասաց փիսոն,— ոչինչ էլ չգիտես, վրայից շան հոտ է գալիս։

Քութիկը շանթահարվածի պես վեր թռավ տեղից։

— Շա՜ն հոտը քո՛ վրայից է գալիս, անպիտա՛ն։

Փիսոն խորամանկորեն ժըպտաց, մեջքն ուռցրեց.

— Իսկ դու խելք չունես, քո՛ւթիկ,— ասաց ու գնաց։





Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Երբ օրը մթնեց, Նվարդ մայրիկը լվացքը հավաքեց։ Քիչ հետո եկավ նաև Գագիկը։ Քութիկն ուրախացավ, պոչը շարժեց, փարվեց նրա ոտքերին ու շշնջաց․

— Գիտե՞ս, Գագիկ; փիսոն ինչ էր ասում։

Գագիկը շոյեց քութիկին։ Քութիկին թվաց, թե դրանով նա ասում է․ «Ոչի՛նչ, ես նրան ցույց կտամ»։ Քութիկը բարձրացավ ետևի ոտքերին։

— Լա՛վ ես, շա՛տ լա՛վ ես,— ասաց Գագիկն ու գրկեց շանը։ Քութիկն առաջին թաթերը դրեց Գագիկի ուսերին և մտերմաբար գռմռաց։ Նրա թաթերի հետքերը մնացին Գագիկի շորերի վրա։

— Վաղը նորից լվացք կփռեն,— ձայն տվեց փիսոն պատշգամբից,— լսո՞ւմ ես, քութիկ, նորից լվացք կփռեն։

# ԱՌԱՎՈՏՅԱՆ

Գ. ԱԼԱԳՅՈԶՅԱՆ

Արթնացել է բադիկը,
Դեպի գետակ է վազում.





Արթնացել է ձագիկը.
Փնչիկ-պոչիկն է լիզում.
Արթնացել է հավիկը,
Շեկլիկ թևերն է մարզում.

Արթնացել է Հովիկը,
Փնթփնթում է, տզտզում...
—Ամո՛թ, ամո՛թ Հովիկին,
Ի՞նչ է ուզում՝ չի ասում։







Նկ. Ս. ՍԱՖՅԱՆԻ

## ԼՈՂՈՐԴԸ

Նկ. Ռ. ԲԱԲԱՅԱՆԻ






— Երեքին գումարած ութ, երեքին գումարած ութ,––անընդհատ կրկնում էր Գագիկը ու ամեն ասելուց հետո գրիչի կոթը սեղմում ատամներին։ Մայրիկը տեսնելով այդ, մոտեցավ նրան։

— Այդ ինչ է, չե՞ս կարողանում լուծել։

— Ո՛չ, մայրիկ...կա... կարողանում եմ, միայն մտածել է պետք։

— Լավ, քեզ կօգնեմ։ Ա՛յ, քեզ երեք խնձոր եմ տալիս, հիմա ուր որ է տատիկն էլ շուկայից կգա, ութն էլ նա կտա։ Ընդամենը քանի՞ խնձոր կունենաս։

Գագիկն անմիջապես գործի գցեց մատները և քիչ հետո ուրախ ասաց.

— Տասնմեկ...







— Այդ ինչի՞ց է, Գագիկ, երբ խնդիրներդ խնձորներով ես լուծում, շատ շուտ ես գտնում պատասխանը։

— Այդ նրանից է, մայրիկ, որ Գագիկը խնձոր շատ է սիրում,—վրա բերեց Գագիկի փոքրիկ քույրը։

## ՄՈՍԿՎԱՅԻ ԼՈՒՅՍԵՐԸ

Մայրիկը տանը չէր։

Հայրիկը նստած ռադիոընդունիչի մոտ, ուշադիր ինչ-որ հաղորդում էր լսում, իսկ փոքրիկ Համիկը անաղմուկ խաղում էր տիկնիկի հետ։ Հանկարծ սենյակը մթնեց, ռադիոընդունիչը դադարեց խոսելուց։ Հայրիկը սկսեց գայրացած ետ ու առաջ քայլել սենյակում Այդ ժամանակ Համիկը մոտեցավ հորը ու հարցրեց.

— Հայրիկ, լույսը որտեղի՞ց է գալիս։

— Էլեկտրակայանից, աղջիկս։

— Իսկ էլեկտրակայանը որտե՞ղ է։

— Քաղաքից դուրս, գետի վրա։

— Հիմա Մոսկվայում է՞լ են լույսերը հանգել։

— Ո՛չ, ինչ՞ չ ես ասում, աղջիկս, Մոսկվային ուրիշ էլեկտրակայաններ են լույս տալիս։

— Բա էլ ինչու՞ ես բարկանում, միացրու Մոսկվա, չէ՞ որ այնտեղ լույսերը չեն հանգել։

### ԱԼԵՔՍԱՆԴՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ










# ՊԱՌԱՎՆ ՈՒ ԽՈԶՈՒԿԸ

(Անգլիական ժողովրդական հեքիաթ)



Ժամանակով մի պառավ ավլում էր իր սենյակը և գտավ մի քիչ ծամռված, վեց պենսանոց դրամ։

— Սրանով ի՞նչ անեմ,— մտածեց պառավը,— արի գնամ շուկա և մի խոզուկ գնեմ։

Պառավը ինչպես ասաց, այնպես էլ արեց։ Եվ ահա նա տուն տարավ խոզուկին։ Ճանապարհին մի ցանկապատ պատահեց։ Այստեղ խոզուկը համառեց և չուզեց ցանկապատի վրայով անցնել, պառավը ստիպված եղավ մենակ գնալ։

Շատ գնաց, թե քիչ, հանդիպեց մի շան։

— Շուն, ա՛յ շուն, կծիր խոզուկին,— խնդրեց պառավը։— Խոզուկը չի ուզում ցանկապատի վրայով անցնել, ես էլ լույսով տուն չեմ հասնի։

Բայց շունը չլսեց նրան։

Պառավը շարունակեց իր ճամփան։ Շատ գնաց, թե քիչ, հանդիպեց մի փայտի։

— Փա՛յտ, ա՛յ փայտ, ծեծիր շանը,— խնդրեց պառավը։— Շունը չի ուզում խոզուկին կծել, խոզուկը չի ուզում ցանկապատի վրայով անց-





նել, ես էլ լույսով տուն չեմ հասնի։

Բայց փայտը նրան չլսեց։

Պառավը շարունակեց իր ճամփան։ Շատ գնաց, թե քիչ, տեսավ մի տեղ կրակ է վառվում։

--Կրակ, ա՛յ կրակ, վառիր փայտին,—խնդրեց պառավը։—Փայտը չի ուզում շանը ծեծել, շունը չի ուզում խոզուկին կծել, խոզուկը չի ուզում ցանկապատի վրայով անցնել, ես էլ լույսով տուն չեմ հասնի։

Բայց կրակը չլսեց նրան։

Պառավը շարունակեց իր ճամփան։ Շատ գնաց, թե քիչ, Ջրին հանդիպեց։

— Ջուր, ա՛յ Ջուր, հանգցրու կրակը, -խնդրեց պառավը։-Կրակը չի ուզում փայտը այրել, փայտը չի ուզում շանը ծեծել, շունը չի ուզում խոզուկին կծել, խոզուկը չի ուզում ցանկապատի վրայով անցնել, ես էլ լույսով տուն չեմ հասնի։

Բայց Ջուրը չլսեց նրան։

Պառավը շարունակեց իր ճամփան։ Շատ գնաց, թե քիչ, հանդիպեց եզանը։

—Եզ, ա՛յ եզ, խմիր Ջուրը,—խընդրեց պառավը։--Ջուրը չի ուզում կրակը հանգցնել, կրակը չի ուզում փայտը այրել, փայտը չի ուզում շանը ծեծել, շունը չի ուզում խոզուկին կծել, խոզուկը չի ուզում ցանկապատի վրայով անցնել, ես էլ լույսով տուն չեմ հասնի։

Բայց եզը նրան չլսեց։

Պառավը շարունակեց իր ճամփան։ Շատ գնաց, թե քիչ, մի մսագործի հանդիպեց։

— Մսագործ, ա՛յ մսագործ, մոր-



թիր եզանը,— խնդրեց պառավը։ — Եզը չի ուզում ջուրը խմել, ջուրը չի ուզում կրակը հանգցնել, կրակը չի ուզում փայտը այրել, փայտը չի ուզում շանը ծեծել, շունը չի ուզում խոզուկին կծել, խոզուկը չի ուզում ցանկապատի վրայով անցնել, ես էլ լույսով տուն չեմ հասնի։



Բայց մսագործը չլսեց նրան։

Պառավը շարունակեց իր ճամփան։ Շատ գնաց, թե քիչ, հանդիպեց պարանին։

— Պարան, ա՛յ պարան, կախիր մսագործին,— խնդրեց պառավը։— Մսագործը չի ուզում եզանը մորթել, եզը չի ուզում ջուրը խմել, ջուրը չի ուզում կրակը հանգցնել, կրակը չի ուզում փայտը այրել, փայտը չի ուզում շանը ծեծել, շունը չի ուզում խոզուկին կծել, խոզուկը չի ուզում ցանկապատի վրայով անցնել, ես էլ լույսով տուն չեմ հասնի։

Բայց պարանը չլսեց նրան։

Պառավը շարունակեց իր ճամփան։ Շատ գնաց, թե քիչ, հանդիպեց մկնիկին։

— Մկնիկ, ա՛յ մկնիկ, կրծիր պարանը,— խնդրեց պառավը։— Պարանը չի ուզում մսագործին կախել, մսագործը չի ուզում եզանը մորթել, եզը չի ուզում ջուրը խմել, ջուրը չի ուզում կրակը հանգցնել, կրակը չի ուզում փայտը այրել, փայտը չի ուզում շանը ծեծել, շունը չի ուզում խոզուկին կծել, խոզուկը չի ուզում ցանկապատի վրայով անցնել, ես էլ լույսով տուն չեմ հասնի։

Բայց մկնիկը չլսեց նրան։

Պառավը շարունակեց իր ճամփան։ Շատ գնաց, թե քիչ, հանդիպեց կատվին։

— Կատու, ա՛յ կատու, կեր մկնիկին,— խնդրեց պառավը։— Մկնիկը չի ուզում պարանը կրծել, պարանը չի ուզում մսագործին կախել, մսագործը չի ուզում եզանը մորթել, եզը չի ուզում ջուրը խմել, ջուրը չի ուզում կրակը հանգցնել, կրակը







չի ուզում փայտը այրել, փայտը չի ուզում շանը ծեծել, շունը չի ուզում խոզուկին կծել, խոզուկը չի ուզում ցանկապատի վրայով անցնել, ես էլ լույսով տուն չեմ հասնի։

Իսկ կատուն պատասխանեց.

— Գնա, ա՛յ էն կովի մոտ և ինձ համար մի փոքրիկ աման կաթ բեր, այն ժամանակ ես մկնիկին կուտեմ։

Պառավը գնաց կովի մոտ։

Բայց կովը նրան ասաց.

— Գնա, ա՛յ էն խոտի դեզից ինձ համար մի գրկաչափ խոտ բեր, այն ժամանակ ես քեզ կաթ կտամ։

Պառավը գնաց ու դեզից մի գրկաչափ խոտ բերեց կովի համար։

Կովը կերավ խոտը ու պառավին կաթ տվեց։ Պառավը կաթը լցրեց մի փոքրիկ ամանի մեջ և տարավ կատվին։

Կատուն կաթը խմեց և մկնիկին որսաց, մկնիկը սկսեց պարանը կրծել, պարանը սկսեց մսագործին կախել, մսագործը սկսեց եզանը մորթել, եզը սկսեց ջուրը խմել, ջուրը սկսեց կրակը հանգցնել, կրակը սկսեց փայտը այրել, փայտը սկսեց շանը ծեծել, շունն սկսեց խոզուկին կծել, իսկ խոզուկը վախից անցավ, ցանկապատի վրայով։

Պառավն էլ լույսով տուն հասավ։

Ռուս. Թարգմ. ՄԻՔԱՅԵԼ ՌԱՇԻԴ









Նկ. Ա. ՊԱՐՈՆՅԱՆԻ

Տրվում է ձրի «Պիոներ» ամսագրի 8-րդ համարի հետ



# Եկեք հաշվենք

ՀՈԲՈՍ ԱՊԵՐ

Տատը ուներ այնքան բադ,
Որքան երկու ձեռքիդ՝ մատ,
Այնքան ձվեր ուներ պինդ,
Որքան մատ կա ոտներիդ:
Եվ ինչքան բադ ու ձու կար,
Նա բաժանեց հավասար.

Մի ձու, մի բադ՝ Կարինին,
Մի ձու, մի բադ՝ Սուրենին,





Մյուս թոռներն էլ նույնքան
Ե՛վ բադ, և՛ ձու ստացան:
Քանի՞ թոռ կար տատիկին,
Դե շուտ ասա. ի՛մ անգին:



# Կեռաս



Ով որ հաշիվն իմանա,
Թող կեռասին տիրանա:

Ծառին իջավ մի սարյակ,
Կեռաս թափեց ծառի տակ:
Վեցը տարավ Մանուկը,
Հինգ անգամ շատ՝ գող մուկը.
Վեց կեռաս էլ կարմրած
Ծառի վրա դեռ մնաց:
Ծառին ինչքա՞ն կեռաս կար.



Նկ. Կ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ



## ՆԱՎԱԿԻ ՔԱՅԼԵՐՈՎ

Շախմատի տախտակի f 7 վանդակում նավակն է: Դուք գիտեք, որ նավակը քայլում է ուղղահայաց և հորիզոնական վանդակներով:

Կարո՞ղ եք նավակի 15 քայլով անցնել տախտակի բոլոր վանդակներով, սկսելով f 7-ից և վերջացնելով d7-ով:



## ՃԻ՞ՇՏ Է ԱՐԴՅՈՔ

Մի մարդու հարցրին.

— Քանի՞ տարեկան ես:

— Ես իմ մի քանի ազգականներից վեց հարյուր անգամ մեծ եմ,—պատասխանեց նա:

Հնարավո՞ր բան է այդ:

Վարորդը նայեց մեքենայի հաշվիչին: Անցած կիլոմետրերի քանակը արտահայտվում էր մի հետաքրքիր թվով՝ 15951-ով: Հակառակ կողմից նույն թիվն էր ստացվում:

— Հետաքրքիր է,—մտածեց վարորդը,—հիմա երևի հաշվիչի վրա երկար ժամանակ այլևս այնպիսի թիվ չի ստացվի, որը նույն հատկությունն ունենա:

Սակայն ուղիղ երկու ժամ անց՝ հաշվիչը ցույց տվեց մի թիվ, որը երկու կողմից կարդալիս նույնն էր լինում:

Կարո՞ղ եք որոշել, թե այդ երկու ժամում ինչպիսի արագությամբ էր գնում մեքենան:

## ՀԻՆԳ ՀԱՐՑ

Ուսումնասիրեցե՛ք այս նկարը և պատասխանե՛ք հետևյալ հարցերին.

1. Բոլո՞ր լողացող երեխաներն են եկել ձախ կողմում երևացող ճամբարից: 2. Նավակը լողում է գետի հոսանքի ուղղությա՞մբ, թե ընդհակառակը: 3. Հեռո՞ւ է արդյոք գյուղը: 4. Գյուղը գետի ո՞ր ափին է գտնվում՝ ձա՞խ, թե աջ: 5. Ճամբարում ո՞ր հերթի երեխաներն են՝ առաջի՞ն, թե երկրորդ:



## ՈՒՇԱԴԻՐ ԵՂԵՔ



Նկարում դոմինոյի երեք քարերը նշանակված են խաչերով: Կարո՞ղ եք ասել, թե այդ քարերից յուրաքանչյուրը քանի՞ ուրիշ քարերի հետ է շփվում:

## ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ

«Պիոներ» № 7

ՈՒ՞Մ ԱԶԳԱՆՈՒՆՆ Է — 1. Պուշկինը, 2. «Գիքորը», 3. Զարյան, 4. Գավրոշը, 5. Սարյանը, 6. Խանդութը, 7. Խանզադյան, 8. Աղայանը, 9. Սունդուկյան, 10. Անդերսենի: Ուղղահայաց վանդակներում՝ Շիրվանզադե:

ՈՒ՞Վ ՇԱՏ ԿԳՐԻ — դասարան, բատարան, հախարակ, մագաղաթ, գավազան, կաղապար, հաշարան և այլն:

ԿԱՏԱԿ-ԽՆԴԻՐՆԵՐ — 1. Երկուսով, մյուսները կվառվեն-կվերջանան:

2. 13 ռուբլի: 3. 111—11=100:

4. Երեք սագ: Թռչում էին մեկը մյուսի ետևից:

